# ՍԱՀՄԱՆԱՊԱՀԸ

*ԼՈՒ ՑԶՅԱՆ*

Անցավ կողքով ժամապահի
Հրամանատար Գո-խուան.
Նշանավոր զորամասի
Մոտով անցավ Գո-խուան։

Կանգնի՛ր զգաստ, սահմանապահ,
Կանգնի՛ր ինչպես վեհ արձան.
Հրամանատարն ահա կգա,
Կփոխի քեզ անպայման։

Բայց Գո-խուան անուշադիր,
Մտածմունքի մեջ ընկած,
Զնկատեց իր զինվորին,
Կողքով անցավ ու գնաց։

Իսկ զինվո՞րը... Նա իր պոստում
Կանգնած լուին ու խրոխտ,
Սահմաններն է արթուն հսկում
Իրիկունից առավոտ։

*Ռուս. թարգմ. Ս. ՄԿՐՏՉՅԱՆ*




Նկ. Ս. ԱԶԻԶՅԱՆԻ

№ 10 1959 թ.
ՀՈԿՏԵՄԲԵՐ



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
31-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԱՏԱՆԻ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ






*Հոկտեմբերի 1-ին լրացավ Չինաստանի Ժողովրդական Ռեսպուբլիկայի ստեղծման տասը տարին:*

*Մեր ամսագրի այս համարը ամբողջովին նվիրված է եղբայրական մեծ Չինաստանին: Տպագրված նյութերը ձեզ կպատմեն այնտեղի խիզախ մարդկանց, գեղեցիկ բնության, բնական հարստությունների մասին, այն մասին, թե ինչպես են ապրում, աշխատում ու սովորում ձեր հեռավոր չին բարեկամները:*

## 1. ԴԱՐԵՐԻ ԽՈՐՔԻՑ ՄԻՆՉԵՎ ԵՐԶԱՆԿԱԲԵՐ ԱՅԳԱԲԱՑԸ

Չինաստանը երկրագնդի հնագույն երկրներից է: Հազարամյակներ առաջ, երբ աշխարհի ժողովուրդներից շատերը դեռևս ձևավորված չէին, Չինաստանում արդեն բարձր կուլտուրա և արվեստ գոյություն ուներ:

Չինացիներն են առաջին անգամ հնարել վառոդը, թուղթը, ճենապակին, հրթիռը: Չինական ճենապակին ու մետաքսը Եվրոպայում ոսկուց թանկ են գնահատվել: Սակայն չին ժողովուրդը դարեր շարունակ ապրել է ստրկության, խավարի, աղքատության մեջ: Այդ մեծ ժողովուրդը շարունակ ենթարկվել է օտարերկրյա թալանչիների և տեղացի կալվածատերերի ու վաճառականների շահագործմանն ու ճնշմանը:

Իհարկե, չին ժողովուրդը լուռ ու մունջ չի տարել այդ բոլոր անարդարությունները: Որքան էլ շահագործողներն աշխատել են խավարի մեջ պահել նրան, նա ոտքի է կանգնել պայքարելու իր ազատության ու երջանկության համար: Բայց չինացիների պայքարն ավելի կազմակերպված բնույթ ստացավ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո: Սովետական Միության օրինակով նրանք տեսան, թե ինչպես կարող է ժողովուրդն իր կամքով տնօրինել իր բախտը: Եվ որքան էլ ամերիկյան, անգլիական, ճապոնական իմպերիալիստները փորձեցին խանգարել, չին ժողովուրդը վերջ ի վերջո ստացավ իր ազատությունը:

1949 թվականի հոկտեմբերի 1-ին Պեկինի Տյանանմին հրապարակում 300 հազար երջանիկ չինացիների աչքի առաջ վեր բարձրացավ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի դրոշը:

Սկսվեց չին ժողովրդի կյանքի մեծ, լուսաշող այգաբացը:

## 2. ՓՈՔՐԻԿ ՀԵՐՈՍՆԵՐԸ

Ազատության ու երջանկության համար իրենց ծնողների, ավագ եղբայրների, քույրերի հետ միասին պայքարել են նաև փոքրահասակները:

Ահա թե նրանցից մեկի մասին ինչ է պատմում



*Տեսեք, այս փոքրիկը ինչպիսի հետաքրքրությամբ նայում է իր ծնողներին, որոնք վերացնում են իրենց անգրագիտությունը:*

Չինաստանի ազատագրական պայքարի մասնակիցներից մեկը:

... Բանդիտներն իրենց առջևից հրելով փոքրիկ տղային, մոտենում էին: Նրանց հրացաններն ուղղված էին մեզ: Նրանք պատրաստվում էին գրոհել մեզ վրա, բայց մենք ոչինչ չէինք կարող անել: Տղան, որի հետևից մոտենում էին թշնամիները, մեր մարտիկներից մեկի եղբայրն էր: Մեկ էլ, տագնապալից լռության մեջ հնչեց տղայի զրնգուն ձայնը.

— Եղբա՛յր, ինչու՞ ես լռել, կրակի՛ր: Ոչինչ, որ ես այստեղ եմ: Կրակի՛ր: Վրեժ լուծիր ամեն ինչի համար, մեր մոր համար, որին սպանեցին: Կրակի՛ր...

Նա հանկարծ լռեց: Մեկ էլ բոլորս տեսանք, թե ինչպես այդ տղայի վագրիկ անունով շունը դուրս պրծավ մեր դիրքերից և ատամներով կառչեց տղային քաշ տվող բանդիտի ոտքից: Գոմինդանականը ցավից ոռնաց և ընկավ: Տղան ակնթարթաբար բանդիտի գոտուց քաշեց նռնակը, պոկեց ապահովիչն ու բարձրացրեց գլխից վեր: Բանդիտների խումբը սարսափից քարացած նայում էր ձեռքի նռնակին:

Ես աչքերս փակեցի:

Նռնակը պայթեց: Երբ աչքերս բացեցի, տեսա, որ մեր դիմաց ծխից ու փոշուց բացի, ուրիշ ոչինչ չէր մնացել...

## 3. ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

Չինաստանն ազատագրվեց:

Բայց նոր, լուսավոր կյանքի համար պայքարը չավարտվեց: Որքա՜ն գործ կար անելու: Երկարատև կռիվներից բոլորովին քայքայվել էր երկրի առանց այն էլ հետամնաց տնտեսությունը: Բնակավայրերում մատների վրա կարելի էր հաշվել գրագետներին:

Հարկավոր էր կառուցել ճանապարհներ, գործարաններ, դպրոցներ, բնակելի տներ:

Եվ Չինաստանին օգնության ձեռք մեկնեց Սովետական Միությունը:

Ուխան քաղաքի բնակիչներին շատ ու շատ դառնություններ է պատճառել կատաղի և հորդառատ Յանցզի գետը: Նա հաճախ էր դուրս գալիս ափերից և ողողում տները, փչացնում ցանքերը: Այդ հեղեղումներից տուժում էին միայն աշխատավորները: Երբ գետը դուրս էր գալիս հունից, հազարավոր մարդիկ չէին կարողանում տուն վերադառնալ: Ախր նրանք աշխատում էին մյուս ափին:

Եվ ահա վերջերս Յանցզիի ափերն ամրացվեցին. Նրա վրա գցվեց երկաթյա մի խոշոր կամուրջ: Կամուրջն անվանվեց «Ցուխառ», այսինքն «Բարեկամություն», որովհետև կառուցվեց սովետական մասնագետների օգնությամբ:

Ուխան քաղաքում Սովետական Միության օգնությամբ ուրիշ կամուրջներ էլ են կառուցվում:

Աշխատասիրությունը չին ժողովրդի ամենաբնորոշ հատկություններից մեկն է: Դրան գումարվեց սովետական ժողովրդի եղբայրական օգնությունը.



*Ցիննպո գյուղի կոոպերատիվի անդամները փոխադրում են իրենց աճեցրած բերքը:*



Այստեղ կառուցվում է ավտոմոբիլային մի վիթխարի գործարան

ՏԱՍՍ-ի ֆոտոխրոնիկա

և ահա թե ինչ արդյունքների հասավ Չինաստանը:

Կապիտալիստական Անգլիան տասնամյակների ընթացքում պողպատի տարեկան ձուլումը հասցրել է 11 միլիոն տոննի: Չինաստանին՝ այդ մակարդակին հասնելու համար պետք եղավ միայն մեկ տարի: 1958 թվականը այդ երկրի պատմության մեջ մտավ որպես մեծ թռիչքների տարի՝ ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում:

կազմակերպել են չինարենի խմբակ, որին տվել են տասնհինգամյա չին հերոս պարտիզանուհի Լյու Խու-լանի անունը:

Սովետական և չին ժողովրդի բարեկամությունը միշտ անթառամ կմնա:

Եվ այդ բարեկամությունը ամենամեծ գրավականն է ողջ աշխարհում՝ խաղաղության պաշտպանության համար:

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

## 4. ՀԱՎԵՐԺԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

1956 թվականին Շանհայի նավահանգիստ ժամանեցին սովետական «Վդումշիվիյ» («Մտածկոտ») և «Վրազումիտելնիյ» («Բանիմաց») նավերը: Հենց նույն օրը քաղաքի հեռախոսային ցանցի մի մոնտյորի տանը ծնվեցին երկվորյակներ: Ծնողներն իրենց զավակների անունները դրին Զժիմոու և Ցիմեն, որ եթե թարգմանենք հայերեն, ապա կստացվեն սովետական նավերի անունները:

Մեր նավաստիներն այժմ նամակագրական ջերմ կապ են պահպանում այդ երեխաների ծնողների հետ, նվերներ են ուղարկում երեխաների համար:

Բարեկամության կապի նման օրինակներ շատ կարելի է բերել: Միմյանց հետ կապ են պահպանում սովետական և չինական պիոներներն ու դպրոցականները, բանվորները, գիտնականները, այլ մասնագիտությունների տեր աշխատողներ: Բարեկամները միմյանց պատմում են իրենց կյանքի մասին, միմյանցից օրինակ վերցնում, թե ինչպես կարելի է ավելի լավ աշխատել, սովորել ու ապրել:

Ահա մի օրինակ: Սոչի քաղաքի աշակերտները նամակագրություն ունեն չին պիոներների հետ: Այդ դեռ բավական չէ: Նրանք ուսումնասիրում և սովորում են իրենց բարեկամների լեզուն: Նրանք



Վերջերս Երևան էին ժամանել չին արտիստները: Նրանց ելույթները ամենուրեք ջերմ ընդունելության էին արժանանում:

Լուսանկարը՝ Ռ. ԳԵՎՈՐԳՅԱՆԻ

# ՆՈՐ ԶԳԵՍՏԸ

ՍԻՆ ՄՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Երբ պատուհանին փակցրած թուղթը գունաթափվեց, Սյաո Ցզյու-անն արթնացավ։ Դեռ երեկ շրջանից վերադարձած գյուղի ավագը հաճելի լուր բերեց։ Կորեայում ամերիկյան զավթիչների դեմ մղած կռվում Սյաո Ցզյու-անի հայրը հերոսություն էր կատարել, և այսօր մինչև ճաշ, գյուղ պիտի գա շրջանի պետը, որպեսզի մասնակցի հանդիսավոր միտինգին և Սյաո Ցզյու-անենց տնակի պատին պատվո տախտակ ամրացնի։

Երբ տղան աչքերը բացեց, մայրն արդեն պատրաստել էր նախաճաշը։



— Մայրիկ,— ասաց նա,— զգեստս պատրա՞ստ է։

— Հիմա պատրաստ կլինի,— ասաց մայրն ու սկսեց կարել զգեստի կոճակները։

Տղայի զգեստը հիշեցնում էր կապո՜ւյտ-կապո՜ւյտ արևավառ երկինքը։ Կտորը վաղուց էին առել կոոպերատիվից, բայց մայրը զբաղված էր եղել դաշտային աշխատանքներով և ժամանակ չէր ունեցել զգեստը կարելու։

Այսօրվա միտինգի առթիվ, որ նվիրված էր տղայի հոր սխրագործությանը, մայրն ամբողջ գիշեր նստած կարեց երեխայի զգեստը։

Մինչև նախաճաշը մայրը կոճակները կարեց և հագցրեց նոր զգեստը, պտտվեց երեխայի շուրջը, նայեց չորս կողմից և ժպտալով ասաց.

— Մի քիչ մեծ է, բայց ոչինչ, դու մատղաշ ծառի պես անում ես։

Հիացմունքից ժպտաց տղան։

Այնուամենայնիվ մայրն ասաց.

— Հանիր զգեստդ, գնա՛ բանջարանոց, մի քիչ կանաչեղեն հավաքիր, շրջանի պետին կհրավիրենք մեզ մոտ ճաշի։

Սյաո Ցզյու-անը հոնքերը կիտեց։

— Ինչ է, մի տասն անգամ պիտի հանեմ-հագնե՞մ, զգույշ կլինեմ, չե՞մ կեղտոտի,— ասաց նա։

— Ոչ, կանաչը թաց է, շորերդ կկեղտոտես։

Սյաո Ցզյու-անը լռեց, բայց զգեստը չհանեց։ Տղան գլուխը կախած շուռ էր տալիս բաճկոնի փեշը։ Նրա շուրթերն ավելի ուռել ու փքվել էին։

— Հորդ ես քաշել, նրա նման համառ ես, լա՛վ, գնա։ Եթե շորդ կեղտոտես, էլ չեմ թողնի փառքի պսակ դնես գլխիդ։

Երեխան քշտեց ոտները, վերցրեց զամբյուղն ու մանգաղը և տնից դուրս թռավ։

Փողոցում մարդ չկար։ Գոմաղբի կողովը մեջքին, գյուղից դեպի տղան էր գալիս Ցու Լայ պապիկը։ Ջրհորի մոտ մի քանի հոգի ջուր էին հանում։ Մորաքույր Ջուն Շենը, տեսնելով զամբյուղը ձեռքին թռչկոտող Սյաո Ցզյու-անին, ասաց.

— Մի տեսեք, ի՜նչ գեղեցիկ, ի՜նչ սիրուն է հագնըված Սյաո Ցզյու-անը։ Այ թե մի այդպիսի փեսա ունենայի...

Ջրհորի մոտ հավաքվածները ծիծաղեցին։

Երբ Սյաո Ցզյու-անը դուրս եկավ գյուղից, երկինքը բռնկված էր առավոտյան վարդագույն ցոլքով, դաշտերը՝ վառ կանաչին էին տալիս, արևը փայլում էր պայծառորեն և շողշողում տղայի նոր զգեստի վրա։

Սյաո Ցզյու-անը քայլում էր առվի ափով։

Առուն բացել էին այս տարվա գարնանը, և մարդիկ այլևս չէին տրտնջում ջրի պակասությունից։ Առվի երկու կողմերում ծաղկել էին փարթամ բանջարանոցներն ու դաշտերը։ Հանկարծ Սյաո Ցզյու-անը կանգ առավ։ Ինչ-որ մեկը ջրել էր բամբակը և առուն պինդ չէր փակել. ջուրը հեղեղում էր

բամբակի ցանքերը։



Սյաո Ցզյու-անը մի կողմ դրեց զամբյուղը ու ձեռքով սկսեց քանդել հողը՝ խռու-վակը փակելու համար։ Բայց ջուրը քշում տանում էր հողը։ Սյաո Ցզյու-անը վախեցավ, ուզեց օգնության կանչել որևէ մեկին, բայց շրջակայքում ոչ ոք չկար։

Տղան սկսեց հողը քանդել մանգաղով ու լցնել խուվակի բացված տեղը։ Բայց ոչինչ չստացվեց։ Այն ժամանակ նա որոշեց վազել գյուղ, կանչել որևէ մեկին, բայց հանկարծ լսեց մի ուժգին ճողփյուն. ջուրը սրբել-տարել էր մի ահագին հողակույտ։ Եվ հիմա մեծ ուժով առաջ էր սլանում, քանդում ամեն ինչ։

— Թմբերը քանդվեցի՜ն, թմբերը քանդվեցի՜ն,— բացականչեց տղան։

Մի կողմ նետեց մանգաղն ու զամբյուղը, մտավ ջուրը և իր մարմնով ծածկեց քանդված խրվակը։ Ջուրը դադարեց հոսելուց, բայց տղայի նոր զգեստը, ամբողջ մարմինն ու դեմքը շաղախվել էին ցեխով ու տիղմով։

Գյուղից լսվեցին զանգերի ձայներ։ Երեխան հասկացավ, որ զանգերը միտինգի էին հրավիրում գյուղի բնակչությանը, և նրա սիրտը կարծես այրվեց կրակով. բայց նա տեղից չշարժվեց։

— Թմբերը քանդվեցի՜ն, թմբերը քանդվեցի՜ն,— նորից բղավեց Սյաո Ցզյու-անը։

Այդ ժամանակ ճանապարհով անցնում էր մի մարդ՝ գոմաղբով լի կողովը մեջքին։ Տղան անմիջապես ճանաչեց անցորդին։ Ֆու Լայ պապիկն էր։

— Պապի՜կ, պապի՜կ,— ձայն տվեց տղան,— արտը հեղեղվում է։

Բայց պապիկը չլսեց երեխայի ձայնը ու շարունակեց ճանապարհը։

Իմանալով, որ պապիկը ծանր է լսում, ձեռքերը փող դարձրեց ու ավելի բարձր բղավեց.

— Պա-պի՜կ, ջու՜-րը, ջու՜-րը...

Պապիկը լսեց առվից եկող ձայնը և շտապեց օգնության։

— Պապիկ, շու՛տ արա, հասի՛ր, բամբակը հեղեղվեց։

Ֆու Լայը մի կողմ նետեց կողովը, ձեռքը մեկնեց՝ երեխային ջրից հանելու համար, բայց նա ձեռքը չտվեց ու գլուխը բացասաբար շարժելով, ասաց.

— Շո՛ւտ արա, հո՛ղ բեր, հո՛ղ լցրու։

Ծերունին անմիջապես թափեց կողովի թրիքը, այնտեղ լցրեց հող ու տարավ դատարկեց խուվակի մեջ։

— Ա՛յ, ա՛յ, եթե դու չլինեիր, որդիս, ջուրն ամբողջովին կքանդեր և չէինք կարող փրկել ոչ բամբակի, ոչ էլ կաղամբի ցանքսերը։ Այնուհետև Ֆու Լայը մի քանի կողով հող թափեց ու ջրի առաջն առավ։

— Գյուղում արդեն զանգերը հնչել են, մարդիկ հավաքվել են միտինգի,— հիշեցրեց տղան պապիկին։

— Դրա համար էլ ես գյուղ էի շտապում,— պատասխանեց ծերունին.— չէ՞ որ այսօր պետք է հողբաջագործության մասին խոսենք։ Շու՛տ արա, գնանք։

Գյուղից նրանց ականջին հասան զանգի ձայնը ու երեխաների ուրախ երգերը։



Տղան հուզված, տագնապահար սրտով գնում էր գյուղ։ Եվ քանի կրճատվում էր գյուղի ու նրա միջև ընկած տարածությունը, այնքան ավելի թուլանում էին նրա ոտքերը։ Թարսի պես բոլորը պիտի պատահեր հենց այսօր։

Առջևում երևաց Սյաո Ցզյու-անի մայրը՝ փոքրիկ քույրը գրկին։ Երբ մայրը տեսավ կեղտոտ, ապականված տղային սկսեց բարկանալ։

Սյաո Ցզյու-անը նկատեց, որ մայրն ու քույրը նոր, գեղեցիկ շոր են հագել, շուռ եկավ ու փախավ տուն։ Բայց գյուղի պետը տեսավ նրան ու բռնեց թևից.

— Ի՞նչ է պատահել,—հարցրեց նա,—ինչու՞ ես այդպես կեղտոտվել։

Բոլորն սկսեցին ծիծաղել։ Իսկ տղան ամոթից կարմրեց ու սրբեց ճակատի քրտինքը։

Եվ ահա հայտնվեց Չու Լայ պապիկը։

— Լռե՛ք, բոլորդ լռե՛ք,—ասաց նա։—Սյաո Ցզյու-անի դեմքի կեղտի նշանները հերոսության նշաններ են։ Այսօր նա փրկեց մեր ցանքսերը։

Եվ Չու Լայ պապիկը պատմեց, թե ինչպես տղան իր մարմնով փակեց հորդացող ջրի խողովակը։

Այն ժամանակ շրջանի պետը գրկեց տղային, գլխից վեր բարձրացրեց և ասաց.

— Դու իսկական հերոսի զավակ ես։

Թարգմ. ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ



Ֆրուկան

Մեծ Անդերսենը. եղբայրները Գրիմմ
Բյուր հրաշքների գիրկն են մեզ տարել.
Բայց լոկ հանճարեղ Լենինն է երկրին
Ամենաչքնաղ հեքիաթը բերել։

Ուր անապատը կյանքով է լցվում.
Դառնում է գյուղեր ու դաշտեր բերրի.
Ոսկի արտերն են ցորենով ծփում
Մեղմ խշշոցի տակ նոր անտառների։



# ՑԱՄԱՔԱԾ ՀԵՂԵՂԱՏԸ

Վ. ՏԱԼՅԱՆ

1

Չինաստանի հյուսիսային գավառներից մեկում կա Դոլոնոր անունով մի քաղաք։ Հուշերիս տետրում շատ դեպքեր կան այդ փոքրիկ քաղաքի հետ կապված։

Բայց ես կպատմեմ մի դեպք, որ պատահել է սրանից մոտ տասնհինգ տարի առաջ։

Դոլոնոր քաղաքին չհասած՝ մի հեղեղատի մոտ կանգ առավ մեր հակատանկային հրետանու բրիգադի գնդերից մեկը՝ հենց մեր գունդը։ Հեղեղատն անցնում էր հովտի մեջտեղով ու քաղաքի կողքով ձգվում հեռուն։

Եվ ահա մենք, ինչպես կարգն է, վրաններ խըփեցինք, հրանոթները ճամբարային դիրքի բերեցինք և գործի գցեցինք խոհանոցներն ու օջախները։ Երեկոյան արկերով լիքը արկղներն էլ իջեցրինք ավտոմեքենաներից ու դարսեցինք ցամաքած հեղեղատի մեջ։

Եվ կյանքը մտավ իր հունի մեջ, ինչպես որ լինում է սովորական զինվորական ճամբարում։ Ամբողջ օրն արևն անխնա այրում էր, իսկ երեկոյան իջնում բուսականությունից զուրկ լեռների հետևը։ Ու ոչ մի ամպ, ոչ մի կաթիլ անձրև։ Քաղաքն էլ այնքան մոտիկ էր, որ հաճախ էինք լինում այն-

## Հրաշք

## ՑԶԻՆ ՑԶԻՆ

Հսկա լեռները են տեղահան լինում՝
Գործարանների տեղերը զիջած։
Ջոր տափաստանը մի ծով է դառնում,
Ջով է տարածում ծովի շունչը թաց։

Ու հարավային ծառերը նազուկ
Հյուսիս են ձգտում անվախ ու հաստատ,
Եվ արբանյակն է աստղերին հասնում...
Ո՞րտեղ եք լսել այսպիսի հեքիաթ.

Որ անապատը բերքի ծով դառնա,
Ու առատությունն ամենուր հորդի,
Որ բոլո՛ր-բոլո՛ր գետերն ընթանան
Ցույց տված ճամփով մեծ առաջնորդի։

Ջե՛ն լինի երբեք սարերն հպատակ
Ո՛չ կախարդներին, ո՛չ մոգերին ծեր.
Ժողովուրդն այդ մեծ ալ դրոշի տակ
Գիտե իրական հրաշքներ գործել։

*Ռուս. թարգմ. Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ*



տեղ։ Ու մեր ճամբարն ասես Դոլոնոր քաղաքի մի թաղամասն էր դարձել։

2

Մի օր էլ, առավոտ վաղ տեսանք, որ մեր վրանի կողմն է գալիս բարձրահասակ ու նիհար մի չինացի։ Այնպես էր քայլում, ոնց որ պարելիս լինեն. նրա ձախ ուսից կախված լծակավոր զամբյուղների պատճառով։ Իսկ զամբյուղների մեջ դարսված էին՝ զագար, խաշխաշի խրձիկներ և այլ բարիքներ, որ այդ մարդն աճեցրել էր իր փոքրիկ հողակտորում։

Դեռ հեռվից չինացին մեզ ողջունեց ու մոտեցավ։ Չէր կարելի հասկանալ՝ ժպտո՞ւմ է նա, թե՞ ոչ. ժպտալիս աչքերը լրիվ փակվում էին։ Միայն կնճիռներից էր երևում, թե ինչքան սրտանց է նա ժպտում։ Մոտեցավ, ուսից ցած բերեց իր «կշեռք-կրպակը», պպզեց ու ձեռքով ցույց տվեց իր բարիքները։ Բայց տարօրինակ էր. և՛ «ապրանք» էր առաջարկում, և՛ ուշադիր նայում հանգիստ կանգնած հրանոթներին ու հեղեղատում կանոնավոր դարսած արկղներին։

Տեսանք, որ չինացին շատ է նայում արկղներին, մենք էլ նրա հայացքի ուղղությամբ նայեցինք ու հոնքներս կիտելով, աչքներս գցեցինք նրա դեմքին. այսինքն՝ կասկածելի մարդ ես երևում, ապրանքդ առ գնա՛։ Չինացին հասկացավ մեր միտքը, ոտքի կանգնեց ու ծիծաղելով գլուխն օրորեց։ Երևի ուզում էր ասել՝ իզուր եք կասկածում։ Ապա սկսեց շարժումներով ինչ-որ բան հասկացնել։ Սկզբում մատնացույց արեց արկղները, ծածկոց-



րեց ու գլուխը տարուբերեց։ Մենք կարծեցինք, թե երևի արկղները կանոնավոր չենք դարսել։ Բայց չէ, ամեն ինչ կարգին էր։

Հանկարծ չինացին երկու ձեռքն էլ պարզեց դեպի երկինք, ամպի որոտի ձայն հանեց ու ձեռքերն իջեցնելով, փը՜շշ արեց։ Ուզում էր ասել՝ անձրև կգա։ Է՛, թող գա, ավելի լավ։ Սերժանտ Վորոբյովը նույնիսկ ծիծաղեց ու ասաց.

— Մի ամիս է քարշ ենք գալիս այստեղ, մի կաթիլ անձրև չտեսանք. էս մարդն ի՞նչ է ասում։

— Հա, էլի... էն էլ՝ փը՜շշ... —մրմնջաց Իսանգուլովը, կրկնելով չինացու շարժումը։

Չինացին չհանգստացավ։ Նա երկու ձեռքը պարզեց բուսականությունից զուրկ սարի կողմն



Նկ. Կ. ՀԱՑԱԳՈՐԾՅԱՆԻ

ու սարսափած արտասանեց թերևս միակ ռուսերեն բառը, որ գիտեր.

— Վո... դա... գը՞ռռ...

Մենք ուշադիր հետևեցինք նրա ձեռքերին։ Ու մեր աչքին պատկերացավ ահավոր մի հրեշ, որ գոռում-գոչումով իջնում է սարի լանջով, ամեն ինչ բերանն առած՝ անցնում է ցամաքած հունով ու սրընթաց գնում քաղաքի կողմը։

Նա ամեն կերպ հասկացնում էր, որ արկղները վերև բերենք, թե չէ հրեշը կգա, կքշի կտանի։

— Է՛, ախպերս, դու մեր գլուխը մի՛ թողացի, ոչ մի բան էլ չի լինի,— չինացուն հանգստացրեց Տյուտյուլկինը, թփթփացնելով նրա ուսը։

Եվ չինացին «ա՛յ-ա՛յ-ա՛յ» ասելով ու գլուխը տմբտմբացնելով շտապեց դեպի քաղաք։ Մանր ու արագ քայլերով Վո-դան (այսպես անվանեցինք նրան) գնաց հասավ բլրի կատարին, ետ դարձավ, մեկ էլ նայեց մեզ, ուսերը վեր քաշեց, երեսը շուռ տվեց ու սկսեց իջնել բլրի հակառակ լանջով։

Մենք մի քանի րոպե մտածմունքի մեջ ընկանք. հը՞, չլինի՞ թե մարդը ճիշտ էր ասում։ Նայեցինք իրար։

— Էդ ի՞նչ տեսակ հրեշ պիտի լինի, որ էն ծանր արկղները քշի տանի...— անհոգ նկատեց Իսանգուլովը։

— Եկեք հայտնենք գնդի հրամանատարին,— լուրջ ասաց մեր հրանոթի հրամանատար Կապլիցան։

Իսանգուլովը փռթկացրեց։

— Փուչ բանի համար գնանք հասնենք հրամանատարին... Փահ՜...

Մենք ծիծաղեցինք, իսկ ռոստովցի Կարապետյանցը հիշեցրեց հայտնի խոսքը, թե՝ ծիծաղում է նա, ով վերջն է ծիծաղում։

Այդպես էլ հարցը փակվեց ու մենք գնացինք քնելու։

Մյուս առավոտյան երկինքը թեթևակի ամպամած էր։ Սկսեցինք սովորականի պես նախաճաշել վրաններից դուրս, հենց գեղնած կանաչին նստած։ Բոլորս էլ լուռ էինք։ Միայն Կապլիցան էր, որ մերթ ընդ մերթ ծուռ-ծուռ նայում էր սարի կողմը, ապա մեզանից մեկն ու մեկին ու նորից սկսում էր ծամել։

— Փը՜շշ...— հանկարծ փշշացրեց Իսանգուլովը և բերնի պատառը հազիվ կուլ տալով, քրքջաց։

Մենք իսկույն հիշեցինք չինացուն։

— Գը՜ռռ...— ավելացրեց Տյուտյուլկինը և գդալը գցելով կաթսայիկի մեջ, ծիծաղից փորը բռնած՝ թավալ տվեց գետնով։

Զվարթ հռհռոցը մնաց բերաններս։ Կարծես կատակասերների ձայնին արձագանքելով՝ սարի հետևից որոտացին իրար շալակ եկած թուխպերը։ Ամպի որոտը թռավ լեռան վրայով, ալիք-ալիք զարնվեց շրջակա սարերին, ձորակներով իջավ ցած ու գնաց ցնցելու լայնարձակ տափաստաններն ու ավազուտները։

Եվ ասես երկինքը հազար տեղով պատռվեց. անձրևաջրի վիթխարի զանգվածները թափվեցին մեզ վրա։

Մենք ուշքի եկանք, թիկնոցներս գլուխներիս քաշեցինք ու վազեցինք ցամաքած հեղեղատի կողմը։ Սարի լանջով սկսեց ցած հորդել ցեխի պես պղտոր մի գետ։

— Փը՜շշ...— զայրույթով հիշեցրեց Կարապետյանցը և ոչնչացնող մի հայացքով խեղճացրեց Իսանգուլովին։

Սերժանտ Վորոբյովը ձայն չէր հանում։ Նա

միայն չափվում էր, թե ինչպես կարելի է մտնել գետը։

Երկու կատակասերն էլ գլուխները կախեցին։

— Ի՞նչ եք շվարել,— հանկարծ բղավեց դասակի հրամանատար Լև Զայցևը,— հասե՛ք, փրկեցե՛ք...

Եվ նա ցույց տվեց արկղները։

Շուտով ամբողջ գունդը հեղեղատի ափին էր։ Հազարավոր կատաղած կոկորդիլոսների պես իրար հետև ընկած, իրար գլխի վրայով թռչելով, միմյանց հրելով, գոռգոռալով առաջ էին սլանում սև ալիքները։

Այդպիսի հեղեղի բերանն ընկնելը անմտություն կլիներ. դրա համար էլ հրաման չեղավ նետվել հեղեղի մեջ և դուրս բերել լիքը արկղները։

Մի քանի րոպե անց անձրևը դադարեց, ամպերն սկսեցին ցրվել։ Ամբողջ հովտի վրա միայն իշխում էր պղտոր գետի շառաչը։ Քիչ հետո հեղեղի կատաղությունն իջավ, բայց թափը դեռ չէր կոտրվել։

Այդ պահին մեր վրաններին մոտեցան կարմիր [illegible] մի խումբ չինացիներ, որոնք այդ օրը [illegible] պարեկություն էին անում։ Նրանցից ամեն մեկի ուսին մի բահ կամ մի բլունգ կար։ Նրանք ինչ-որ բան էին գոռում և շտապ-շտապ քշտում էին շալվարները։

Գնդի հրամանատարը մոտեցավ նրանց, սեղմեց ձեռքերը, ապա կարոտած եղբոր պես փաթաթվեց նրանցից մեկին։ Մենք նայեցինք ու ապշած մնացինք։ Հրամանատարի հետ գրկախառնվողը հենց նա էր, մեր Վո-դան, որի խելացի խորհուրդը չէինք լսել։

Մինչ այդ մեզանից շատերն արդեն ջուրն էին մտել և ափ էին հանում ծանր արկղները։

Բարձրահասակ չինացին հրամանատարին ցույց էր տալիս իր տղերքին ու ձեռքերը տարածում դեպի հեղեղատը. այսինքն՝ մենք բոլորս պատրաստ ենք հենց այս րոպեին օգնել ձեզ։ Նա մեկ-մեկ էլ խնդրելու շարժում էր անում, որովհետև գնդի հրամանատարը թփթփացնում էր նրա ուսը, ըստ երևույթին հանգստացնում, ապա դառնալով մեր կողմը, ձեռքի լայն շարժումով չինացիներին ուզում էր ասել՝ մի տեսեք ինչքա՞ն ենք մենք, է...

Չինացիները մեկ ժպտում էին, մեկ էլ բերաններն ու աչքերը լայն բանալով, զարմանում։

Գնդի հրամանատարը նորից սեղմեց նրանց ձեռքերն ու շնորհակալություն հայտնեց, որ եկել են օգնելու... Հանկարծ մեր Վո-դան աջ ձեռքը դրեց հրամանատարի կրծքին, ձախ ձեռքի բահը պարզեց հեղեղի ակունքի կողմն ու իր խմբին նշան անելով հասկացրեց, թե իրենք կգնան սարի կողմն ու հեղեղը կկտրեն։ Նա բահով կտրելու նշան արեց։

Հրամանատարը նայեց նրան, ծիծաղեց և բութ մատը տնկելով բացականչեց.

— Շանգո... շատ լավ...

Մի վայրկյան չանցած, արագավազ չինացիները անհետացան։ Հրամանատարը վերադարձավ ափ։

Շուտով հեղեղը դարձավ մի բարակ առու, որը բլբլալով շորորում էր գետաքարերի արանքներով։

Մենք չիմացանք, թե մեր բարեկամներն ինչ արեցին, որ հեղեղի խելահեղ հոսանքն այդպես շուտ դադարեց, բայց երբ նրանք հպարտ և ուրախ անցնում էին մեր ճամբարի վերևով, բոլորս բարձրագոչ ողջունեցինք նրանց։

* * *

Մի ամիս անց՝ մենք տուն վերադարձանք և ամեն մեկս մեր գործին եղանք, բայց երբ հիշում եմ այս փոքրիկ դեպքը, սիրտս խորունկ զգացմունքով է լցվում դեպի մեր Վո-դան, նրա ազնիվ ընկերները, իմաստուն և աշխատասեր չին ժողովուրդը։

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ՏՈՆ

Չինաստանի քաղաքներում ու գյուղերում հաճախ կարելի է տեսնել մարդկային բազմություններ, որոնք երգելով ու պարելով ինչ-որ տեղ են գնում։ Մարդկանց ձեռքերին բազմագույն դրոշակներ, պլակատներ ու տրանսպարանտներ կան։ Տոն է, աշխատանքի տոն։ Դա նշանակում է, որ գործարաններից մեկում «արբանյակ» են արձակել, և ժողովուրդը իր հաջողությունների մասին գնում է զեկուցելու պարտիայի շրջանային կոմիտե։

Չինաստանում այժմ հաճախ է գործածվում «արբանյակ արձակել» արտահայտությունը։ Երբ որևէ կոլեկտիվում այդպես են ասում, ուրեմն այնտեղ աշխատանքային նոր ռեկորդ է սահմանվել։

Վերջերս Պեկինում 5 օրվա ընթացքում մի շենք կառուցվեց։ Ռեկորդային ժամկետ։ Սա նշանակում է՝ «արբանյակ» են արձակել։ Որևէ հողամասում, եթե բարձր բերք են աճեցրել, ուրեմն այնտեղ էլ «արբանյակ» են արձակել։

Ամեն օր չին ժողովուրդը բազմաթիվ այդպիսի «արբանյակներ» է արձակում, ամեն օր տոն է Չինաստանում, նորանոր հաղթանակի տոն։

# Ճշմարտություն

ՆՑՈՒ ԽԱՆ

Լի Լի-ցինը՝ բարեկամն իմ,
Երբ ինձ տեսավ, հեռու հեռվից
Բացականչեց.—Հե՜յ, հարևան,
Ի՞նչ փաթեթ ես տանում նորից:

Ասում եմ ես Լի Լի-ցինին.
—Կմոտենամ, կպատմեմ քեզ,
Իմ սիրելի «Պրավդայի»
Նոր համարն եմ ստացել ես:

— «Պրավդայի՞»,— հարցրեց Լի-ցին:
— Այո, «Պրավդա՛»,- շշնջացի:
Ու իմ ձեռքից փաթեթն առավ
Սրտի անհուն թրթիռով մի:

Ու միասին սենյակ մտանք:
Լամպն էր ցրում խավար ու մուժ,
Լին խնամքով թերթը բացեց
Ու սեղանին փռեց զգույշ:

Ամեն կողմից նայում է նա
Սյունակներին՝ երկար ու լայն,
Ահա թերթի մի անկյունից
Առաջնորդն է ժպտում նրան:

— Լենի՜ն... —ասաց բարեկամն իմ
Ու վեր կացավ իսկույն տեղից,—
Ճշմարտությունն այս գեղեցիկ
Հասել է մեզ Մոսկվայից:—




Նկ. Կ. ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ու մատներով կարդում է նա,
Մի վառ ժպիտ բարի դեմքին.
Ու թվում է ամբողջ «Պրավդան»
Կարդալ է նա ուզում մեկից:

Թեև բառերն անծանոթ են,
Բայց զգում է սիրտն ամեն բան.
Նա Մոսկովյան ճշմարտությամբ
Անցավ կյանքի դժվար ճամփան:

Քսան տարի պայքարեց նա,
Որ միշտ լինի ճշմարտություն,
Եվ նա հաղթեց: Դրա համար
«Պրավդան» ձեռքից բաց չի թողնում:

Ռուս. թարգմ. ՀԵՆՐԻԿ ՍԵՎԱՆ

# ԳԱՐՆԱՆ ՏՈՆԸ

Այն ժամանակ, երբ մեզ մոտ դեռ ցրտաշունչ փետրվարն է իշխում, Չինաստանում արդեն զգացվում է մոտեցող գարնան շունչը։ Արևի ջերմ ճառագայթների ազդեցության տակ, ծառերի վրա սկսում են երևալ առաջին բողբոջները։ Մարդիկ հանում են իրենց ձմեռային վերարկուները և ման են գալիս գարնանային զգեստներով։ Փետրվարյան այս օրերին չին ժողովուրդը նշում է իր գարնան տոնը, որն առաջ կոչվում էր Նոր տարվա տոն։

Այժմ Չինաստանում ընդունված է նույն օրացույցը, որ գործածական է բազմաթիվ երկրներում։ Իսկ ընդունված օրացույցի համաձայն, ինչպես ձեզ հայտնի է, Նոր տարին նշվում է հունվարի 1-ին։ Չին ժողովուրդը հետևելով իր վաղեմի սովորությանը, գարնան և Նոր տարվա տոները միաժամանակ է նշում։



Նկ. Հ. ԳԱԲՈՒՋՅԱՆԻ

Գարնան տոնը չին երեխաների ամենասիրելի տոներից մեկն է։ Այդ օրերին նրանք հագնում են տոնական զգեստներ և դուրս են գալիս փողոց։ Աղջիկները մազերին կապում են վառվռուն ժապավեններ, ոմանք էլ կարմիր են ներկում իրենց այտերը։ Հեծանիվների դեկերին ճպուռի ձայն հանող «ֆինչե» կոչված ֆռռիկներն ամրացրած՝ սլանում են հեծանվորդները։

Մեկը մյուսից հետաքրքիր զվարճություններն այնքան շատ են, որ երեխաները դժվարանում են որոշել, թե ամենից առաջ ուր գնալ։ Այդ օրերին քաղաքներում ու գյուղերում բացվում են մեծ տոնավաճառներ։ Շատ երեխաներ գնում են այդ տոնավաճառները տեսնելու։ Աղմկոտ է լինում այն վրանների մոտ, որտեղ վաճառվում են կառնավալային զվարճալի դիմակներ, փայտյա նիզակներ ու թրեր, տարբեր ձևերի ու գույների թղթե օդապարուկներ։

Պեկինի ամենամեծ հրապարակում՝ Տյանանմինում, երեխաները միմյանց հետ մրցում են օդապարուկներով։

Բայց երեխաները ոչ միայն զվարճանում են, այլև ունեն որոշ գործեր։ Ահա տոնավաճառի անկյուններից մեկում մարդկանց մեծ բազմությունը շրջապատել է մի պիոների, որը ցույց է տալիս նկարազարդ ստենդը և պատմում առողջապահության մասին։

Քիչ այն կողմ տարիքավոր մի քանի մարդիկ ուշադիր լսում են մի փոքրիկ աղջկա, որը բարձրաձայն կարդում է մի հետաքրքիր գիրք։

Իսկ երբ իջնում է երեկոն, Պեկինի երկինքը գունազարդվում է վառ լույսերով, կարծես թե շնորհալի դերձակուհիները կարել են հեքիաթային գույներով ու չտեսնված նախշերով զարդարված մի հսկայական ծածկոց։ Դա հրավառությունն է։ Հրթիռները օդ են թռչում խլացուցիչ շռինդով ու աղմուկով, որին հետևում են աղջիկների ու տղաների հիացական բացականչությունները։

Գարնան դիմավորումը տևում է երկու շաբաթ։ Վերջում լինում է լապտերների տոնը։

Տանիքների վրա ամրացնում են զանազան գույների լապտերներից կազմված ամբողջ ծաղկեշղթաներ, իսկ փողոցներով անցնում են մարդիկ, որոնց ձեռքերի երկար ձողերի ծայրերին ճոճվում են թղթյա լապտերներ։ Դրանք լինում են կլոր, բազմանիստ, ձկան, թռչունի, թիթեռի, ձյան փաթիլի ձևի և այլն։

Շատ լապտերների վրա գրված են լինում հանելուկներ։ Ով այդ հանելուկները շուտ գտնի, նա էլ կստանա մրցանակը։

# ՍՊԻՏԱԿ ՀԱՎԻԿԸ











*Այս պատմվածքը գրել է չինական հայտնի նկարիչ Վան Լյու-ցյուն և ինքն էլ նկարազարդել:*

Վաղ առավոտյան մայրը պատրաստվում էր աղջկան դպրոց տանել։ Հանկարծ աղջիկը ետ դարձավ դեպի պատը և մռայլվեց։ Նա հիշեց իր սպիտակ հավիկին: Վերջերս գյուղում եղել էին գոմինդանական զինվորները: Նրանք թռնել էին Սյաո Խուարի սպիտակ հավիկին, մորթել ու կերել։

— Մի՛ լար, Սյաո Խուար,— ասում էր մայրը։— Ուրիշ հավիկ կգնենք:

Աղջիկը հանգստացավ և դպրոց գնաց։ Իսկ երբ վերադարձավ, բակում տեսավ սպիտակ հավիկին, շիկակարմիր աքլորիկին և սևուկ խոզուկին։

—Շնորհակալություն, մայրիկ,— գոչեց Սյաո Խուարը։— Շնորհակալություն:

Նա խոզուկին քշեց խոզանոց, իսկ աքլորիկի և հավիկի ոտքերը պարանով պինդ կապեց։

— Մի՛ վախենա, աքլորիկ ջան, մի՛ վախենա, հավիկ ջան,— ասում էր Սյաո Խուարը։ – Գոմինդանականներն էլ չեն գա:

Շուտով սպիտակ հավիկը ձու ածեց։ Սյաո Խուարը շատ ուրախացավ և ձուն դրեց դդմե ամանի մեջ։

Սպիտակ հավիկը ամեն օր մի ձու էր ածում: Սյաո Խուարը արդեն կարողանում էր մի քիչ կարդալ, գրել և հաշվել։ Նա ամեն օր գրում էր, թե քանի ձու է ածել հավիկը։

Ամեն ինչ լավ էր գնում։ Բայց մի անգամ Սյաո Խուարը լսեց ինքնաթիռների ձայնը և թնդանոթների որոտը: Ուրեմն, նորից հարձակվում են գոմինդանական զինվորները։ Ուրեմն, պետք է փախչել գյուղից։

Սյաո Խուարն ուզում էր իր հետ վերցնել սպիտակ հավիկին, շիկակարմիր աքլորիկին և սևուկ խոզուկին։ Նա բակում երկար վազեց նրանց հետևից, բայց չկարողացավ բռնել: Նրա ձեռքում միայն աքլորիկի շիկակարմիր մի փետուր մնաց: Իսկ խոզուկը այնպիսի կարճ պոչուկ ուներ, որ բռնել չէր լինի։

Մայրը Սյաո Խուարին տարավ գյուղից: Նրանց հետ միասին գնացին և ուրիշ բնակիչներ։ Գյուղ եկան զինվորները, բայց ոչ գոմինդանականներ, այլ ժողովրդա-ազատագրական բանակի մարտիկները։ Նրանք սկսեցին ապրել Սյաո Խուարի տանը։

Աքլորիկը, հավիկը և խոզուկը մոտեցան շեմքին և սկսեցին աղմկել։

— Ծուղրուղո՛ւ,— երգեց աքլորիկը,— ես ուտել եմ ուզում։

— Խը՛ռ-խը՛ռ,— ասաց խոզուկը,— ինձ համեղ ուտելիք տվեք։

— Կըրթ, կըրթ,— կանչեց հավիկը,— ինձ էլ կեր տվեք։

Հրամանատար Վանը հրամայեց մարտիկ Սյաո Ջժանին՝ կերակրել աքլորիկին, հավիկին և խոզուկին։

Սյաո Ջժանը լավ կերակրում էր աքլորիկին, հավիկին և խոզուկին։ Սպիտակ հավիկը նորից օրական մի ձու սկսեց ածել։

Սյաո Ջժան մարտիկը խնամքով դարսում էր դրանք դդմե ամանի մեջ և գրանցում ամեն մի ձուն։

Գոմինդանականներն սկսեցին հարձակվել գյուղի վրա։ Բայց հրամանատար Վանը զգաստ էր։ Նա կրակ բաց արեց և թնդանոթների դիպուկ կրակով ոչնչացրեց շատ թշնամիների։ Գոմինդանականները պառկեցին։ Այն ժամանակ մեր քաջ մարտիկները նրանց վրա գրոհի նետվեցին։ Գոմինդանականները վախեցան և սկսեցին ձեռքերը բարձրացնել. «Հանձնըվում ենք»։

Նրանց բոլորին գերի վերցրին։

— Հաղթանա՜կ... հաղթանա՜կ...

Ուրախացած բնակիչները վերադարձան գյուղ։ Վերադարձան նաև Սյաո Խուարը և մայրը։

Ահա նրանք մտան իրենց բակը։ Եվ հանկարծ նրանց դեմ ու դեմ վազեցին սպիտակ հավիկը, շիկակարմիր աքլորիկը և սևուկ խոզուկը՝ կարճ պոչուկով։

Իսկ ամանի մեջ դրված էր ձվի մի ամբողջ կույտ, վրան՝ մի նամակ։ Սյաո Խուարը վերցրեց նամակը և կարդաց.

«Ես ամեն օր կերակրել եմ ձեր հավերին և խոզուկին։ Հավիկն ութ օրում ութ ձու է ածել։ Ցտեսությո՛ւն... Ժողովրդա-ազատագրական բանակի 3-րդ բաժանմունքի առաջին գումարտակի 5-րդ վաշտի մարտիկ Սյաո Ջժան»։

Ահա այդ ձվերը ամանի մեջ են։ Ով ուզում է՝ կարող է հաշվել։

*Ռուս. թարգմ. Լ. ԱՍՄԱՐՅԱՆ*



# ՉԻՆ

Համիկի առաջարկը բոլորին դուր եկավ։ Եվ իրոք, ավելի հետաքրքիր կլիներ, եթե Չինաստանին նվիրված հավաքույթին ներկա լիներ այն չինացի քեռին, որի հետ Համիկը ծանոթացել էր բարեկամության երեկոյին, երբ միասին նստած էին նախագահության սեղանի շուրջը։

— Բայց ինչու միայն ներկա լինի, — ասաց Մորենը, որն ամենից շատ էր ոգևորվել,— հենց նա էլ թող պատմի իրենց պիոներների մասին։

— Է՛հ, դու էլ բան ասացիր,— առարկեց Սաթիկը,— ոչ նա հայերեն գիտե և ոչ էլ մենք՝ չինարեն, որ խոսեց՝ ի՞նչ պիտի հասկանանք։

— Շատ էլ լավ կհասկանանք,— վրա բերեց Անահիտը, որին Համիկը շատ բան էր պատմել ժամանակավորապես Երևանում գտնվող չինացի գիտնականի մասին։

* * *

Վեցերորդ դասարանցիները անհամբերությամբ սպասում էին հավաքույթին։ Եվ վերջապես եկավ այդ օրը։



## Պիոներական դրուժինայի դրոշը

Դրոշը կարմիր է, զարդարված հնգաթև աստղով և ջահով։ Աստղը Կոմունիստական պարտիայի խորհրդանիշն է, ջահը՝ լույսի, կարմիր դրոշը՝ ռևոլյուցիայի հաղթանակի։



Ջոկատի դրոշը։ Սա էլ օղակի դրոշակն է։

## Չին պիոներների հանդիսավոր խոստումը

Ես՝ Չինաստանի պատանի պիոներս, պիոներական դրուժինայի դրոշի ներքո երդվում եմ, անշեղ հետևել Կոմունիստական պարտիայի ցուցումներին, լավ սովորել, լավ աշխատել և լավ գործել։ Պատրաստ եմ ամբողջ ուժերս նվիրաբերել կոմունիզմի համար։

Չին պիոներների կոչը. «Կոմունիզմի գործի պայքարին եղի՛ր պատրաստ»։

Պատասխանը. «Մի՛շտ պատրաստ»։

* * *

Յուրաքանչյուր պիոներ ունի հաշվառման քարտ, որտեղ գրված են նրա անունը, ազգանունը, հասցեն, որ դպրոցում և որ դասարանում է սովորում, որտեղ և երբ է ընդունվել պիոներական շարքերը, ջոկատի համարը, դրուժինայի անունն ու համարը, պիոների կատարած հասարակական աշխատանքը, պիոներական կազմակերպությունում գտնվելու ժամանակ ստացած խրախուսանքներն ու տույժերը։

Պիոներն ինքն է լրացնում իր հաշվառման քարտը, որը պահվում է դրուժինայի խորհրդում։ Երբ պիոները տարիքի կամ կոմերիտմիության մեջ ընդունվելու կապակցությամբ դուրս է գալիս պիոներական կազմակերպությունից, նրան տրվում է այդ քարտը՝ որպես հիշատակ։



Ամբողջ փողոցի երթևեկությունը կարգավորում են այս երկու պիոներները։

# ՊԻՈՆԵՐՆԵՐԸ

Անահիտը ճիշտ էր ասում։ Յուան Զին-լին այնպես էր խոսում, որ բոլորն էլ հասկանում էին։ Նա լավ գիտեր ռուսերեն, իսկ վեցերորդ դասարանցիներից միայն երկու-երեք հոգի էին ետ մնում ռուսերենից։ Նրանք էլ նստեցին լավ իմացողների կողքին։

— Մեր երկրում,— սկսեց չինացի հյուրը,— առաջին պիոներական բջիջները ստեղծվել են 1925 թվականին, Չինական Մեծ ռևոլյուցիայի ժամանակ։ Հետո առաջ եկան «Աշխատանքային մանկական ջոկատները», որոնցում ընդգրկված երեխաներն օգնում էին մեծերին։

1927 թվականին, երբ Չան Կայ-շին դավաճանեց ռևոլյուցիային, աշխատավորները զենքը ցած չդրեցին։ Նրանք հերոսաբար պայքարում էին օտարերկրյա զավթիչների և չանկայշիական դավաճանների դեմ։ Այդ պայքարում մեծերին օգնում էին երեխաները։ Հենց այդ ժամանակ էլ ամբողջ երկրում սկսեցին առաջ գալ պիոներական ջոկատներ։ Տարեց-տարի նրանց թիվը ավելանում էր։ Երեխաները ժողովրդա-ռևոլյուցիոն բանակի մարտիկներին նամակներ էին հասցնում, թշնամուց թաքցնում էին հացն ու հագուստը, օգնում էին ճակատայինների ընտանիքներին, մեծերի հետ աշխատում էին դաշտում։

Ճապոնիայի դեմ մղած պատերազմի ժամանակ ծնունդ առավ պիոներների հայրենասիրական մի հիանալի շարժում, որը կոչվեց «Հինգ «մի՛»-երի շարժում»։

Մի՛ ցույց տուր ճանապարհ թշնամուն։

Մի՛ աշխատիր փոստատար թշնամու մոտ։

Մի՛ հայտնիր թշնամուն, թե որտեղ է թաքցրած հացն ու մթերքը։

Մի՛ կարդա թշնամու գրքերը։

Մի՛ կեր թշնամու ձեռքի կոնֆետը։

Չինաստանի հյուսիսում բոլորը գիտեն խիզախ պիոներ Վան Էր-սյաոյի մասին։

Մի անգամ թշնամիները հանդիպում են



այդ փոքրիկ հովվին և ստիպում, որ իրենց տանի մի այնպիսի գյուղ, որտեղ ժողովրդական բանակի զինվորներից քիչ կան: Բայց տղան նրանց տանում է այնպիսի տեղ, որտեղ գտնվում էին ժողովրդական բանակի ուժեղ ջոկատները:

Իսկ Կենտրոնական Չինաստանում տարածված է տաս տարեկան հերոս Ցուան Սյաո-հույի անունը:

Թշնամին փնտրում էր պարտիզաններին և գյուղի գործունյա մարդկանց: Հարցաքննելու համար նրանք չարչարեցին գյուղի ամբողջ բնակչությանը: Մարդիկ լռում էին: Այդ ժամանակ թշնամիներն սկսում են սպանել նրանց: Երբ կատաղած ոճրագործները բարձրացնում են հրացանները, որպեսզի սպանեն բոլորին, մեռելային լռության մեջ գրնգում է մի տղայի ձայն.

— Ես գիտեմ պարտիզանների տեղը:

Տղան ճապոնացիներին տանում, տանում և դուրս է բերում գերեզմանատուն:

— Փնտրե՛ք, այստեղ են պարտիզանները:

Իզուր որոնումներից հետո նրանք հասկանում են, որ տղան խաբել է իրենց: Հերոսի մահով ընկնում է Ցուան Սյաո-հույը:

Պատերազմից հետո պարտիայի ցուցումով կոմերիտմիությունը որոշում ընդունեց միասնական պիոներական կազմակերպություն ստեղծելու մասին:

Այժմ Չինաստանում կա 35 միլիոն պիոներ, որոնք շարունակում են առաջին ջոկատների լավ տրադիցիաները և օգնում են իրենց ծնողներին, ավագ եղբայրներին ու քույրերին՝ կառուցելու սոցիալիզմ:

Երբ պարտիան կոչ արեց արշավի դուրս գալ անգրագիտության վերացման համար, հարյուր-հազարավոր կարմիր փողկապավորներ դարձան «փոքրիկ ուսուցիչներ»: Պարտիան կոչ արեց նաև պայքարել «չորս չարիքի» դեմ (ճանճ, մոծակ, ճնճղուկ, մուկ): Եվ նորից պիոներները առաջին շարքերումն են:

Երբ մեր ժողովուրդը կատարեց երկրի զարգացման հնգամյա պլանը, պիոներները որոշեցին ունենալ իրենց «փոքր հնգամյակը»: Բոլորը մասնակցեցին այդ պլանի կազմմանը: Հնարավոր չէ թվել «փոքր հնգամյակի» պատանի կառուցողների գործերը:




Փոքրիկների համար լույս է տեսնում այսպիսի պատկերազարդ մանկական ամսագիր, որը կոչվում է «Սյաոպենյու:

Բայց ես կբերեմ մի քանի օրինակ: 1957 թվականին Խեյլունցզյան նահանգի պիոներները ստեղծեցին երկրում առաջին մեքենատրակտորային կայանը և անունը դրին «Կարմիր փողկապ»: 1958 թվականի սկզբներին Խուբեյ նահանգի պիոներները կառուցեցին 4500 խորանարդ մետր ջրատարողությամբ մի մեծ ջրամբար: Գյուղերում ու քաղաքներում նոր շարժում սկսվեց. «Մեկ կողով պարարտանյութի համար» և «Մեկ աղյուսի համար»: Միայն Խեյլունցզյանի նահանգի պիոներները հավաքեցին 800 միլիոն կիլոգրամ պարարտանյութ: «Պիոներական աղյուսներով» շատ տներ ու գործարաններ կառուցվեցին:

«Փոքր հնգամյակը» պատվով կատարվեց:

Այժմ ձեր հեռավոր բարեկամները սկսել են մի նոր ու հիանալի շարժում. տնկում են «պիոներական անտառներ», պայքարում



















«Սյաոպենյու» մանկական ամսագրից:

են մաքրության համար, ուսումնասիրում են պեկինյան միտանական արտասանությունը. Շանհայում 15 փողոցի չեֆությունը վերցրել են պիոներները: Արտակարգ մաքրություն է տիրում այդ փողոցներում: Հերթապահ պիոներները անուշադրության չեն մատնում կարգապահության և ոչ մի խախտման դեպք: Երեխաներն իրենք են մաքրում փողոցները, կանաչապատում, բացատրական աշխատանք կատարում բնակչության մեջ, կարգավորում են տրանսպորտի շարժումը և նույնիսկ... ստուգում են, թե արդյոք բոլորի գրպանում մաքուր թաշկինակ կա:

Այժմ Չինաստանը «մեծ թռիչք» է կատարում: Երկրին մետաղ է հարկավոր: Բազմաթիվ դոմնային վառարանների կողքին սկսել են երևան գալ նաև պիոներական փոքրիկ վառարաններ: Երեխաները հետազոտում ու գտնում են երկաթահանքեր, հավաքում են մետաղի ջարդվածք: Նրանք իրենց մեծերի իսկական օգնականներն են: Բայց երեխաները ամենուրեք մնում են երեխաներ: Նրանք էլ ձեզ նման սիրում են խաղալ, արշավի դուրս գալ, երգել, պարել: Չին դպրոցականները շատ են սիրում սպորտը, հատկապես բասկետբոլը, որը լայն տարածում է գտել ամբողջ երկրում:

Չինաստանի ազատագրման 10-րդ տարեդարձի առթիվ պիոներները ամիսներ առաջ որոշեցին. «Ամեն մի պիոներ տոնի պատվին մի լավ գործ պիտի անի»:

35 միլիոն պիոնե՜ր... Ուրեմն 35 միլիոն լավ գո՜րծ:

* * *

Այդ օրվա հավաքույթից պիոներները շատ գոհ մնացին: Վերջում նրանք նկարվեցին չինացի հյուրի հետ և թարմ ծաղիկների մի մեծ փունջ նվիրեցին նրան:

Գ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ











## ՉԻԼԻԻՑ ԱՐՏԱՔՍՎԱԾ...

# ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ

Գ. ԱՐԵՎՅԱՆ

Ես չեմ եղել Չիլիում, բայց գրում եմ չիլիացի մի փոքրիկ երեխայի մասին։

Այս ամռանը ես Ղրիմում էի, Արտեկում։

Գեղեցիկ է Արտեկը. այնտեղ հանգստանում են երկու հազար երեխա։ Ես ամենից շատ հուզվեցի օրվա փոստի հետ բերված մի փոքրիկ նամակից, որը գրվել էր հեռու Ստոկհոլմում և եկել հասել Արտեկ...

Ո՞վ էր դրա հեղինակը, կշտապեք հարցնել դուք, պատանի ընթերցողներ։

Յոթնամյա մի աղջիկ, որի անունը... Խաղաղություն է։

Այս աղջկա ծնողները՝ Խոսե և Դելիա Վենտուրելլիները, Չիլիից են։ Նրանք յոթ տարի առաջ մասնակցել են Երիտասարդության համաշխարհային ֆեստիվալին, որ տեղի է ունեցել Բեռլինում։ Եվ հենց այնտեղ էլ ծնվել է աղջիկը, որի անունը Պաս են դրել, այսինքն՝ Խաղաղություն։

Ավարտվեց ֆեստիվալը։ Ամեն մի մասնակից պատրաստվում էր վերադառնալ իր հայրենիքը։ Խոսեն և Դելիան էլ ուզում էին մեկնել Չիլի, հայրենի տուն, հարազատների մոտ։ Չէ՞ որ նրանք այնտեղ էին ծնվել և անցկացրել իրենց մանկությունը, պատանեկությունը, երիտասարդության փոթորկոտ տարիները։

Բայց ահա, հենց այդ պահին հեռագիրը մի ահավոր լուր գուժեց. Խաղաղությանը չի թույլատրվում մուտք ունենալու ամերիկյան մայր ցամաք...

Փոթորկվեցին երիտասարդ ծնողների սրտերը. ի՞նչ անեին,







*Այսոպենյուս մանկական ամսագրից։

Խոսեի աչքերը սահեցին հեռագրի տողերի վրայով.

«Մենք հրաժարվում ենք վերադառնալ այն երկիրը, որտեղից Խաղաղությունն արտաքսված է։

Երիտասարդ ամուսիններ Խոսե և Դելիա Վենտուրելլիներ»։

Շուտով Բեռլինից Չիլի թռան այդ խոսքերը։

Նրանց այլևս չեն ընդունում իրենց Հայրենիքում։ Այդ մտածումից ճմլվում էր նրանց հոգին։ Բայց մի զգացում գալիս, նրանց հպարտությամբ էր համակում. իրենց չեն ընդունում Չիլիի թշնամիները, իսկ աշխատավոր չիլիացիները, անշուշտ, գրկաբաց կընդունեին։

— Այժմ ի՞նչ անենք,—դարձավ Խոսեն Դելիային։

Շագանակագույն մազերը ծավի աչքերից հեռացնելով, Դելիան նայեց Խոսեին։ Երկուսի հայացքներն ուղղվեցին բարուրում պառկած Պասին։ Մանկիկը ժպտում էր. այդ ժպիտը վարակեց ծնողներին և նրանք էլ ժպտացին։

— Մեկնենք որևէ երկիր,—պատասխանեց Դելիան։

— Իսկ ո՞ր երկիրը,—հարցրեց Խոսեն։

Մինչ կինը կպատասխաներ, մեջ ընկավ չինական պատվիրակության անդամներից մեկը։ Շեղ աչքերում ժպիտ խաղացնելով, նա ասաց.

— Այն երկիրը, որը նույնպես Չ-ով է սկսվում՝ Չինաստան...

Ծնողները բնակության վայր ընտրեցին Չինաստանը։

Չիլիացի Պասը մեծանում է Արևելքի այդ մեծ երկրում, վեց հարյուր միլիոն ժողովրդի ծոցում։ Նա հազիվ երկու տարեկան էր, երբ ծնողների հետ մասնակցեց Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բուդապեշտի սեսիային, դեռ հինգ տարեկան չկար, երբ ժամանեց

ինչպե՞ս վարվեին... Չիլիական պատվիրակության մի անդամ նրանց ասաց.

— Երեխայի անունն էլ Խաղաղությո՞ւն կդնեն։ Դե, հիմա հետևանքները վայելեցեք։

— Բայց Բեռլինյան փեստիվալը խաղաղության փեստիվալ էր, մենք բոլորս, աշխարհի ազնիվ մարդիկ, դրան ենք ձգտում։ Ի՞նչ իմանայինք, որ խաղաղության կոչը դուր չի գա Չիլիի տերերին,—խոսեց բորբոքված Խոսեն։

Մի պահ լուռ մնացին նրանք։ Հանկարծ երիտասարդ մայր Դելիան բռնկված, ձեռքն առավ գրիչն ու թղթին հանձնեց մի քանի բառ։

— Հեռագրով Չիլի հաղորդիր,—ամուսնուն մեկնելով ասաց նա։



*Մոսկվա և դարձավ Երիտասարդության ու ուսանողության համաշխարհային 6-րդ փեստիվալի ամենակրտսեր մասնակիցը։ Իսկ այժմ էլ մասնակցում է ուսանողության Խաղաղության Ստոկհոլմյան կոնֆերանսին։*

*Չյունաթուլը ժապավենը մազերին կապված այդ փոքրիկ աղջիկը՝ Պասը, այժմ Ստոկհոլմի կառնավալային դահլինում լսում է հռետորների ճառերը չինարեն թարգմանությամբ։ Ասում են՝ չիլիական աշխարհահռչակ բանաստեղծ Պաբլո Ներուդան գրկել է Պասին, բարձրացրել վեր ու ասել.*

*— Իմ լա՛վ Պաս, դու առաջին չիլիացի աղջիկն ես, որ չինարեն գիտես. մեծացիր, կգա մի օր, երբ ազատ Չիլիից ազատ Չինաստան դեսպան կուղարկենք քեզ...*

*Ահա այս Պասն է, որ Ստոկհոլմից Արտեկ նամակ էր ուղարկել, որ ուզում է հյուր գալ արտեկցիներին։*

*Ի՜նչ լավ է։ Խաղաղությունը, այս երեխայի կերպարանքն առած, Չիլիից արտաքսված սավառնում է երկրե-երկիր...*



*Նկ. Ա. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ*

# Բամբուկի տերև

*ԼՈՒ ՑՁՅԱՆ*

*Նկ. Ա. ԲՈՅԱՋՅԱՆԻ*

Բամբուկի կանաչ, կանաչ տերևներ...
Պոկեցի սիրով ես մի քանի հատ
Ու գուլալ առուն նետեցի հանդարտ։
Առվա՛կ իմ, հոսիր, կարկաչիր արագ,
Եվ թռիր, թռիր բամբուկի տերև,
Մի՛ նայիր երբեք, մի՛ նայիր ետև։
—Ու՞ր ես դու թռչում, իմ կանաչ տերև...
—Թռչում եմ, թռչում,
Մոսկվա եմ գնում։
—Ինչու ես գնում,
Ի՞նչ ես դու տանում...
Ուզում եմ տանես քեզ հետ բարի լուր,
Իմ սրտից բխած ջերմագին համբույր,
Իմ հեռու, կարմիր բարեկամներին,
Որ կարմիր վզկապ ունեն կրծքերին։

Արդյոք գիտե՞ս դու,
Տերև իմ անգին,
Որքան է հիմա
Հուզված իմ հոգին։

Առաջին հերթին հայտնիր, որ նրանց
Առողջություն եմ ցանկանում սրտանց։
Ապա, սիրելիս, դու նրանց ասա,
Որ այս տարի մեծ արդյունքի հասա։

Լցվել եմ հիմա մի նոր աշխույժով
Ու պարապում եմ ես ամբողջ ուժով։
Եթե էջերում իմ օրագրի
Ես անցած տարի «երկու» ունեի,
Ապա այս տարի դու ասա նրանց,
Որ սովորում եմ միայն գերազանց։
Ու հայտնիր հետո, որ անցած տարի
Ես հիվանդացա ու նիհարեցի,
Իսկ այժմ, գիտե՞ս, իմ քաշը անգամ
Ավելացել է հինգ կիլոգրամ։
Եվ անցյալ տարի շատ էր պատահում,
Որ կռվում էի ուրիշների հետ,
Իսկ այսօր արդեն ես եմ բաժանում
Ու էլ չեմ թողնում կռվեն իրար հետ։



Եվ վերջին անգամ խնդրում եմ ես քեզ,
Իմ կանաչ տերև, դու նրանց հայտնես,

Որ ես անցյալ օր
Մի հանդիսավոր
Երդում տվեցի,
Առաջին անգամ
Պիոներական
Վզկապ կապեցի։

*Ռուս. թարգմ. Ե. ԱՌԱՔԵԼՅԱՆ*

# ՎԵՐՋ ՉՈՒՆԵՑՈՂ ՀԵՔԻԱԹԸ

*Կար մի թագավոր, որն աշխարհում ամենից շատ սիրում էր հեքիաթներ լսել։*

*Նա ստիպում էր իր պալատականներին հեքիաթներ պատմել։ Բայց բոլոր հեքիաթներն ամենահետաքրքիր տեղում վերջանում էին։ Դրանից թագավորը զայրանում էր և իսկույն հրամայում՝ պատմողին գլխատել։ Նա ուզում էր այնպիսի հեքիաթ լսել, որ վերջ չունենար։ Դրա համար թագավորն ամեն օր ուղարկում էր իր պաշտոնյաներին ու պահակախմբի մարդկանց, որպեսզի գտնեն ու բերեն նորանոր հեքիաթ պատմողներ։ Բայց սրանք էլ ինչքան երկարացնում էին հեքիաթը, էլի մի տեղ վերջանում էր՝ նորից ու նորից զայրացնելով թագավորին։ Եվ ոչ մի մարդ նրա պալատից չէր վերադառնում, բոլորին գլխատում էր։*

*Մի օր էլ թագավորի մոտ բերին մի պատանու. սա առանց զարմանքի ու վախի սկսեց մի հեքիաթ պատմել։*

*— Շատ հնում ապրում էր մի թագավոր, այնքան հարուստ, որ գանձերին թիվ ու հաշիվ չկար։ Իսկ ցորենը ծով էր, չգիտեին որտեղ տեղավորեին։*

*Մի անգամ թագավորը կանչեց հյուսներ ու պատվիրեց սարքել մի այնպիսի մեծ ամբար, որն իր հավասարը չունենար աշխարհում։ Երբ գործը վերջացրին, ամբարը լցրին ցորենով։ Բայց սարքելու ժամանակ ամբարի վերևում մնացել էր ճնճղուկի չափ մի անցք։ Ճնճղուկները թռան-եկան, ամպերի պես հավաքվեցին ամբարի շուրջը, բայց քանի որ անցքը նեղ էր, սկսեցին մեկ-մեկ ներս մտնել։ Եվ այսպես, ներս մտավ առաջին ճնճղուկը, կտցեց մի հատիկ ու դուրս թռավ, հետո ներս մտավ երկրորդ ճնճղուկը,*



կացեց մի հատիկ ու դուրս թռավ, հետո ներս մտավ երրորդ ճնճղուկը, հետո էլ չորրորդը, հինգերորդը…

Թագավորն սկզբում ուշի-ուշով լսում էր, բայց երբ պատանին սկսեց շարունակ նույն բանը կրկնել, ձանձրացավ, չհամբերեց ու պատմողի խոսքը կտրեց.

— Դե, ասենք թե կերան ու պրծան ողջ ցորենը, հետո ի՞նչ եղավ…

Նրանք դեռ բոլորը չեն կերել, թագավորն ապրած կենա, մի շտապիր։

— Ես ուզում եմ վերջը լսել, վե՛րջը,— հուզված վրա տվեց թագավորը։

— Վերջն իմանալու համար պետք է այնքան սպասել, մինչև ամբարում մի հատիկ ցորեն չմնա,— հանգիստ պատասխանեց պատանին ու շարունակեց.—Հետո էլ վեցերորդ ճնճղուկն է ներս մտնում, կտցում ու դուրս թռչում, հետո էլ յոթերորդը…

— Վե՛րջ տուր,— որոտաց թագավորը և հրամայեց դահճին, որ պատանուն գլխատի։ Բայց պատանին առանց այլայլվելու ասաց.

— Վսեմափայլ արքա, իմ պատմած հեքիաթը հենց քո ուզածն է, վերջ չունի, էլ ինչո՞ւ ես ինձ գլխատում։

Թագավորը խոսք չգտավ առարկելու և ստիպված եղավ խելացի պատանուն ազատ արձակել։

Թարգմ. Գ. ԲԱՆԴՈՒՐՅԱՆ



Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

## ԳՅՈՒՂԱՑԻՆ ԻՆՉՊԵՍ ԷՐ ՆԱՊԱՍՏԱԿՆԵՐ ՈՐՍՈՒՄ

*Մի գյուղացի գնում էր դաշտ աշխատելու: Ճանապարհին հանկարծ նկատեց, թե ինչպես մի նապաստակ, չհղապատառ փախչելիս՝ կըպավ դիմացի մեծ ծառին և տեղնուտեղը սատկեց: Գյուղացին զարմացած վերցրեց այդ որսը և մի կողմ դրեց արորն ու բրիչը: Է՜հ, թող դաշտը ծածկվի մոլախոտով: Նա նստեց ծառի տակ ու սպասեց հաջորդ նապաստակին: Գյուղացին հաշվում էր, որ այդպես, առանց չարչարանքի ու հոգսի, կարող է շատ նապաստակներ ունենալ: Իսկ դուք ի՞նչ եք կարծում, այդ ձևով նա ուրիշ նապաստակ որսա՞ց, թե՞ ոչ:*

## ՆԻԶԱԿՆԵՐ ՈՒ ՎԱՀԱՆՆԵՐ

*Հին ժամանակներում ապրում էր մի զինավաճառ: Նա վաճառում էր նիզակներ և վահաններ: Երբ որևէ մեկը գալիս էր վահան գնելու, նա ասում էր.*

*— Իմ վահանները լավն են և ամուր, ամենաուժեղ նիզակն անգամ չի կարող ծակել:*

*Իսկ երբ որևէ մեկին պետք էր լինում նիզակ, ապա նա ասում էր.*

*— Դիտե՞ք ինչպիսի նիզակներ են, ինչքա՜ն լավ: Ե՛վ սուր են, և՛ ամուր: Ուզածդ, թեկուզ ամենաամուր վահանը կծակի մեկ հարվածով:*

*Մի մարդ, որ կանգնած էր զինավաճառից քիչ հեռու, լսում էր, թե նա ինչպես է գովաբանում իր ապրանքը, վերջապես չհամբերեց և հարցրեց.*



*— Իսկ ի՞նչ կլինի, եթե քո նիզակով հարվածեն քո վահանին:*

*Եվ ի՞նչ կարող էր պատասխանել զինավաճառը:*

## ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉՊԵՍ ՄԻ ՄԱՐԴ ՈՒԶՈՒՄ ԷՐ ՄԱՇԻԿՆԵՐ ԳՆԵԼ

*Մի մարդ որոշեց նոր մաշիկներ գնել: Նա վերցրեց իր ոտքերի չափսը, բայց շտապելուց թուղթը մոռացավ տանը: Գնաց շուկա, մոտեցավ մանրավաճառի արկղին, վերցրեց մի զույգ մաշիկ և սկսեց նայել: Այդ պահին հանկարծ հիշեց, որ ոտքերի չափսը թողել է տանը:*

*— Ես ոտքերիս չափսը տանն եմ մոռացել,— ասաց նա վաճառողին և գնաց տուն:*

*Հասավ տուն, վերցրեց չափսը և նորից շտապեց շուկա: Սակայն, մինչև տեղ հասավ, շուկան արդեն փակվել էր: Այդպես էլ մարդը մնաց առանց նոր մաշիկների:*

*— Ա՛յ քեզ դմբո մարդ: Ինչո՞ւ մաշիկները ոտքերիդ չէիր չափում,— ասացին մարդիկ:*

## ՁԿՆՈՐՍ—ԹՌՉՈՒՆԸ ԵՎ ՈՍՏՐԵՆ

*Ոստրեն սողալով ափ ելավ, բացեց խեցին և սկսեց տաքանալ արևի տակ:*

*Հանկարծ որտեղից-որտեղ թռավ եկավ ձկնորս-թռչունը և կտցեց ոստրեին:*

*Խեցիների փեղկերը իսկույն փակվեցին և ամուր սեղմեցին թռչունի կտուցը: Թռչունը չկարողացավ կտուցը ազատել: Ոստրեն սողաց դեպի ջուրը:*

*—Այսօր անձրև չի գալու, վաղը նույնպես,—ասաց թըռչունը:—Մի՛ կարծիր, թե դու ողջ կմնաս:*

*—Իսկ ես այսօր քեզ բաց չեմ թողնի, վաղը նույնպես,— պատասխանեց ոստրեն:—Ավելի լավ է ինքդ պատրաստվես մեռնելու:*

*Նրանք սկսեցին իրար հետ երկար վիճել, մեկը մյուսին չէր ուզում բաց թողնել: Հենց այդ պահին եկավ ձկնորսը և երկուսին էլ բռնեց:*

## ՀՐԴԵՀԸ

Տան վառարանը լավ չէին սարքել, ծխնելույզը ուղիղ էր, և խողովակներից դուրս էին թռչում բոցերի լեզուներն ու կայծերի խուրձը: Իսկ վառարանի մոտ միշտ էլ ցախի մեծ կույտ էր լինում: Մի մարդ տանտիրոջը խորհուրդ տվեց վառարանը ձևափոխել, ծխնելույզը դարձնել ծնկաձև, իսկ ցախը դարսել վառարանից հեռու: Սակայն այդ խորհուրդը տանտիրոջ մի ականջից մտավ, մյուսից դուրս եկավ:



Եվ ահա մի անգամ կայծն ընկավ ցախի վրա, և իսկույն տունը բռնկվեց բոցով: Հարևանները շատ օգնության հասան և հանգցրին հրդեհը:

Տանտերը պարտք չմնալու համար մորթեց մի հորթ և քեֆի հրավիրեց բոլոր նրանց, ովքեր օգնել էին հանգցնելու հրդեհը: Չգիտես ինչու, հրավիրվածների մեջ չկար միայն այն մարդը, որը խորհուրդ էր տվել ձևափոխել վառարանը:

Ճաշի ժամանակ հյուրերից մեկը դիմելով տանտիրոջը, ասաց.

— Եթե դու ժամանակին լսեիր բարի խորհուրդը, ապա ո՛չ հրդեհ կլինկներ և ոչ էլ այսքան ծախս կանեիր: Ինչո՞ւ համար մեզ հետ չէ այն մարդը, որը քեզ խորհուրդ էր տվել:

Ռուս. թարգմ.

ՀՐԱՅՐ ՄԱՐԿՈՍՅԱՆ

## ՊԻՈՆԸ ԵՎ ԿԱՏՈՒՆ

Օույան հյուր եկավ Սյու անունով մի մարդու մոտ: Տեսնելով պատի նկարին պատկերված պիոնը և նրա կողքի կատուն, Օույան ասաց.

— Սա նկարված է կեսօրին:

— Որտեղի՞ց իմացար, — զարմացավ տանտերը:

— Ծաղիկը գլուխը խոնարհել է, և թերթերն էլ չոր են: Իսկ կատվի բիբերը կարծես երկու նեղ մութ գծիկներ լինեն: Եթե նկարը նկարված լիներ առավոտյան, պիոնի թերթերը մի տեղ հավաքված կլինեին, և նրանց վրա կփայլեին ցողի կաթիլները, իսկ եթե նկարված լիներ երեկոյան, ապա կատվի աչքերի բիբերը կլոր և փայլուն կլինեին:



# ՉԻՆԱԿԱՆ ԱՅԲՈՒԲԵՆ

穫 — Հունձ
豁 — Հովիտ
活 — Կենդանի (շարժում, աշխատանք)
火 — Կրակ
夥 — Արտել, ընկերություն
霍 — Հանկարծակի, հորդ անձրև
貨 — Ապրանք
或 — Կամ
禍 — Դժբախտություն, աղքատություն
擭 — Ցույց տալ ձեռքով
獲 — Զավթել, տիրապետել, հափշտակել
惑 — Կասկածանք

Դուք առօրյա խոսակցության մեջ հաճախ հանդիպում եք այսպիսի արտահայտության. «Ոչ՛, դա իմ խելքի բանը չէ, դա ինձ համար չինական այբուբեն է»:

Անշուշտ հետաքրքիր կլինի մի փոքր ծանոթանալ այդ «անմատչելի» համարվող գրությանը:

Չինացիները հիմնականում խոսում են ինը տարբեր լեզուներով, որոնք բոլորն էլ կոչվում են չինարեն: Մի լեզվով խոսողը մյուսի լեզուն չի հասկանում, բայց երբ մեկը գրում է, մյուսը կարդում է և հասկանում:

Դրա գաղտնիքը չինական գրի՝ հիերոգլիֆի մեջ է: Հիերոգլիֆը՝ չինական այբուբենի «տառը» մեծ մասամբ բառի, երբեմն նույնիսկ նախադասության իմաստ ունի և քիչ դեպքերում է հանդես գալիս իբրև տառ: Հիերոգլիֆը գծանկար է, որի վրա ընդհանուր գծերով տրված է որևէ առարկայի, գործողության կամ գաղափարի սիմվոլը: Օրինակ, լուսանցքում տրրված հիերոգլիֆը, որ «հունձ» է նշանակում («խուո»), պատկերում է փումփուլավոր մի փասիան և մի ձեռք, որ պարզված է նրան բռնելու: Կարելի է առանց չինարենի հնչական կողմը գիտենալու, միայն սովորելով հիերոգլիֆների իմաստները, կարդալ չինարեն և հասկանալ, ճիշտ այնպես, ինչպես թվաբանական նշանները հասկանալի են բոլոր ազգերի համար:

Սակայն չինական այբուբենը, որը ավելի շուտ բառարան է, քան այբուբեն, պահանջում է մի քանի տարի՝ լավ սովորելու համար: Քչերին է հաջողվում կատարյալ գրագետ լինել: Դրա համար այժմ չինացիները աշխատում են պարզեցնել հիերոգլիֆները, որպեսզի գրագիտությունը մատչելի դառնա լայն մասսաներին:

Այժմ տեսնենք, թե ինչպես են հիերոգլիֆներով գրում և կարդում: Քանի որ համանուն բառերը չինարենում հարյուրների են հասնում և ամեն մեկը տասնյակ իմաստներ է արտահայտում, այդ պատճառով էլ դրանք տարբեր հիերոգլիֆներով են գրվում (լուսանցքում տրված է «խուո» բառը իր մի շարք նշանակություններով և գրությամբ): Բայց ինչու՞ են համանուն բառերը այդքան շատ: Այդ նրանից է, որ չինարենում բազմավանկ բառերը շատ քիչ են: Իսկ միավանկներով, որոնք մի քանի հնչյունից են կազմված, հնարավոր չէ շատ բառեր կազմել: Եվ ահա մի բառը ստանում է տասնյակ և նույնիսկ հարյուրավոր իմաստներ: Համանունները արտասանելիս չինացին աշխատում է դրանք փոքր-ինչ երանգավորել՝ իրարից տարբերելու համար: Սակայն միևնույն վանկը հնարավոր չէ հարյուրավոր երանգներով արտաբերել: Դրա համար ամեն մի համանուն ունի իր գրության փոքրիկ տարբերությունը: Երբ խոսակիցը լավ չի հասկանում, թե տվյալ համանունը ո՞ր իմաստով է ասվում, խոսողը գրում է հիերոգլիֆը և ասում. «այս իմաստով եմ ասում»: Դրա համար էլ հիերոգլիֆները չնայած դժվար են սովորում, չեն վերացվում, որովհետև այդ դեպքում միմյանց դժվար կհասկանային նույնիսկ միևնույն քաղաքի բնակիչները:

Գրելիս չինացիները ոչ թե ձախից աջ են գնում, ինչպես մենք, կամ աջից՝ ձախ, ինչպես արաբները, այլ վերևից ներքև, ոչ թե հորիզոնական, այլ ուղղահայաց տողերով:

Չինացիները այն ժողովուրդներից են, որոնք շատ հնում են ստեղծել իրենց գիրն ու գրականությունը: Չինական առաջին գրերը, որ մեզ են հասել, ունեն 3500 տարվա պատմություն: Առաջին գիրքը, որ կոչվում է «Երգերի գիրք», գրվել է 12-րդ դարում (մ. թ. ա):

Ժամանակակից տպագրական տեխնիկայի նախահայրերը չինացիները և կորեացիներն են: Չինաստանում հինգ դար առաջ (7-րդ դար), քան Եվրոպայում, ստեղծվել են տպագրության նախնական նմուշները:

# ՄԵԾ ՃԱՆԱՊԱՐՀԸ

## ՔՍԱՆ ԴԱՐ ԱՌԱՋ

Մեր թվարկությունից 150 տարի առաջ, Ասիայի արևելյան մասում՝ Խուանխե և Յանցզի գետերի շրջանում, Չինական Մեծ պարսպից հարավ, ընկած էին Չինաստանի հողերը։ Այստեղի բազմամիլիոն ժողովուրդն ստեղծել էր բարձր կուլտուրա, կառուցել մեծ ու ծաղկող քաղաքներ, ոռոգման ջրանցքներ։

Այդ ժամանակ Ասիայի հարավ-արևմտյան մասում, Միջերկրական ծովից մինչև Հինդուկուշի և Պամիրի լեռնային հզոր հանգույցը, տարածվում էին Ալեքսանդր Մակեդոնացու կայսրության կործանումից առաջացած մանր ու մեծ պետությունները։

Երկրորդ դարում (մ. թ. ա.) Արևելքում աչքի էին ընկնում հնագույն քաղաքակրթության երեք շրջանները՝ Չինաստանը, Հնդկաստանը և Միջին Ասիան։ Սակայն այդ շրջանները իրար հետ կապված չէին և շատ աղոտ պատկերացում ունեին միմյանց մասին։ Միջին Ասիայի և Չինաստանի միջև ընկած էին հազարավոր կիլոմետրերով ձգվող անանցանելի անապատներ և հսկայական լեռնազանգվածներ։ Այդ անծայր տարածություններում ամռանը կիզիչ շոգ էր լինում, իսկ ձմռանը՝ մրրիկ։ Միայն վայրի գազանների հետքերն էին երևում այդ ամայի վայրերում։ Նրանց հետքերին երբեմն խառնվում էին ձիերի սմբակների հետքերը, որոնք վկայում էին, որ այդտեղով մարդ է անցել։ Դրանք քոչվոր հոներն էին՝ անապատների անհարկու տիրակալները։ Այն ժամանակ չինացիները չգիտեին ավելի կատաղի, ուժեղ և դաժան թշնամի, քան հոները։ Սյունցուները (չինացիներն այսպես էին անվանում նրանց) մրրկի նման հայտնվում էին Չինաստանի սահմանամերձ շրջաններում, հրի ու սրի մատնելով ամեն ինչ, դեպի մոնղոլական տափաստան-

ներն էին քշում հազարավոր բնակիչների։

Այդ չարիքից ազատվելու համար չինացիները կառուցել էին Մեծ պարիսպը, որից այն կողմ նրանք ոչ մի կապ չէին պահպանում արտաքին աշխարհի հետ։

## ԱՆՀԱՅՏ ՈՒՂԻՆԵՐՈՎ

Երկրորդ դարի (մ. թ. ա.) կեսերին չինական կայսր Ու Դիի արքունիքին լուր հասավ, որ հոներին թշնամի «մեծ յուեչժիների» ցեղը հիմնավորվել է արևմուտքում։ Կայսրը որոշեց յուեչժիների մոտ դեսպանություն ուղարկել, դաշինք կապել նրանց հետ և միացյալ ուժերով հարձակվել հոների վրա։

138 թվականին (մ. թ. ա.) սահմանամերձ Լունսի քաղաքից հարյուր մարդուց բաղկացած դեսպանությունը Ջժան Ցյանի գլխավորությամբ ճանապարհ ընկավ։ Ջժան Ցյանը փորձված, զարգացած, դիմացկուն և քաջ մարդ էր։ Մինչ այդ նա մի քանի անգամ եղել էր արտասահմանում և, հավանաբար, հարևան երկրներում դեսպանություն արել։

Ճանապարհորդները չգիտեին, թե որտեղ են բնակվում յուեչժիները։ Իսկ նրանց ճանապարհը անցնում էր հոների տիրապետության միջով, որոնք ճանապարհորդության հենց սկզբին բռնեցին նրան և տարան իրենց մոտ։ Թվում էր ամեն ինչ կորած է։ Հեռու արևելքում մնացել էր հայրենիքը, իսկ ավելի հեռվում՝ արևմուտքում, երկնահաս Տյան-Շանից այն կողմ յուեչժիներն էին։ Հոների «մայրաքաղաքը» մի օր Գոբի անապատի եզրին էր, մյուս օրը՝ Կուկունոր լճի ափին, կամ Նան Շանի լեռնալանջերին։

Այսպես, անցան տարիներ... Սակայն անխոնջ Ջժան Ցյանը հույսը չէր կորցնում։ Նա համբերությամբ սպասում էր հարմար առիթի, որպեսզի փախչի հոների մոտից։ Վերջապես գերության տասնմեկերորդ տարում այդ



նրան հաջողվեց։ Անասելի զրկանքների, այրող արևի ու կատաղի փոթորիկների միջով նա անցավ Տյան-Շանը և դուրս եկավ Դավան երկիրը (Ֆերգանայի հովիտը)։ Դավանի տիրակալը Ջժան Ցյանին ուղարկեց Խորեզմ, որտեղից նա անցավ Բակտրիա (այժմյան Աֆղանստան)։ Այստեղ ապրում էին յուեչժիների ցեղերը։ Սակայն նրանց առաջնորդը չհամաձայնվեց դաշինք կնքել Չինաստանի հետ։

Մի տարի Բակտրիայում մնալուց հետո, Ջժան Ցյանը բռնեց վերադարձի ուղին, ճանապարհին կրկին գերի ընկավ հոների ձեռքը, կրկին փախավ և 13 տարվա բացակայությունից հետո վերադարձավ հայրենիք։ Հարյուր հոգուց մնացել էին միայն երկուսը։

## ՆՈՐ ԱՇԽԱՐՀԻ ՀԱՅՏՆԱԳՈՐԾՈՒՄԸ

Ջժան Ցյանը մանրամասն նկարագրեց իր այցելած երկրները, որտեղ մինչ այդ ոտք չէր դրել ոչ մի չինացի, նկարագրեց նրանց հասարակական կառուցվածքը, բնակիչների զբաղմունքը, լեզուն, կենցաղը։ Բակտրիայում Ջժան Ցյանը հանդիպել էր Շենդու երկրից (Հնդկաստան) եկած վաճառականների և մեծ զարմանքով նրանց մոտ տեսել հարավային Չինաստանում պատրաստված բամբուկե առարկաներ, Դա ճանապարհորդին ենթադրել տվեց, որ Չինաստանը Հնդկաստանի հետ կապվելու հարավային ճանապարհ էլ ունի։ Նա ճիշտ կերպով նշել էր այդ ճանապարհը, որ միայն մի քանի դար հետո բացվեց։

Ջժան Ցյանը հեռավոր երկրներից հայրենիք բերեց խաղողի սերմեր։ Խաղողը մինչ այդ հայտնի չէր Չինաստանում։ Նա







իր երկրում տարածեց նաև կերային խոտաբույսերի սերմերը։

Ճանապարհորդը դրանով էլ չբավարարվեց։ Նա կայսրին առաջարկեց իր նոր համարձակ պլանը. պետք է շարժվել արևմուտք, քշել հոներին, ուղղակի կապեր հաստատել Միջին Ասիայի երկրների հետ, ուղիներ հարթել դեպի հարավ, դեպի Հնդկաստան։

Եվ իրոք, 123—119 թվականներին (մ. թ. ա.) հոների դեմ չինացիներն արշավանք սկսեցին։ Հոները ջարդվեցին և քշվեցին հյուսիսային Մոնղոլիա։ Չինաստանն ազատվեց նրանց ասպատակություններից։

Ճանապարհը բաց էր, և Ժան Ցյանը կրկին այցելեց իր ծանոթ երկրները։ Նա հասավ Ուսան, այստեղից դեսպանություններ ուղարկեց Միջին Ասիայի երկրները, Պարթևների երկիրը, Հնդկաստան և կապեր հաստատեց նրանց հետ։ Հետո նա վերադարձավ Չինաստան և 112 թվականին մահացավ։

Տասը տարի անց, Ժան Ցյանի գնացած հազիվ նշմարելի արահետները դարձան աշխույժ առևտրական ճանապարհներ, որոնցով դարեր շարունակ, չինական մետաքսը հասնում էր մինչև



Միջերկրական ծովի՝ ափերը։ Այդ ճանապարհն այդպես էլ անվանվեց «Մետաքսի մեծ ճանապարհ»։ Չինաստանի սահմաններն ընդարձակվեցին մինչև Ուսան և Դավան, ու Ժան Ցյանի հայտնագործած հողերում հիմնվեցին Չինաստանի 14 նոր գավառները։

Եվ այսպես, ավելի քան քսան դար առաջ, դժվարին պայմաններում չին մեծ հայրենասեր Ժան Ցյանը կատարեց գիտական մեծ սխրագործություն։ Նա իր հայրենիքի համար բացեց ասիական Արևմուտքի մեծ և հին կուլտուրաների աշխարհը, հայտնագործեց նոր ճանապարհներ։ Դրանք կարևոր դեր խաղացին այն ժամանակվա քաղաքակիրթ երկրների մերձեցման ու կապերի ամրապնդման համար։

Հնագույն ճանապարհորդ Ժան Ցյանի անունը այժմ դրվում է աշխարհի մեծագույն երկրախույզների՝ Կոլումբոսի, Մագելլանի, Վասկո դե Գամայի և մյուսների անվան կողքին։

*Վ. ԵՐԿԱՆՅԱՆ*



# „ԲՈՒԴԴԱՅԻ ՁԵՌՔԸ“

*Հարավային Չինաստանի ցիտրուսային բույսերի մեջ կա կիտրոնի (լիմոնի) մի շատ հետաքրքիր տեսակ։ Գիտության մեջ այն հայտնի է բժշկի ցիտրուս անունով։*

*Չինացիները այդ կիտրոնը անվանում են «Ֆո շոու», որը նշանակում է «Բուդդայի ձեռքը»։ Եվ իրոք, այդ մշտականաչ ծառի մեծ, երկարավուն պտուղները, իրենց ձևով հիշեցնում են մարդկային ձեռքի դաստակը՝ երկար մատներով։ Եվ իզուր չէ, որ եվրոպացիները այդպիսի նմանության համար նրան կոչել են մատնանման կիտրոն։ Երբեմն նրան ուղղակի անվանում են ցիտրոն։*

*Մատնանման կիտրոնի կեղևը շատ հաստ է և ծածկված է խոր ակոսներով ու եղունգներով։ «Բուդդայի ձեռքը» սովորաբար լինում է 15—25 սմ երկարության, իսկ երբեմն էլ հասնում է ավելի մեծ չափերի։ Կիտրոնի միջուկը թթվահամ է։ Նրա պտուղները երբեմն ուտում են հում վիճակում, իսկ ավելի հաճախ այն կտրատում են և եփում շաքարի մեջ. այսպես ավելի համեղ է լինում։*

*Կիտրոնը ուտում են նաև չորացրած վիճակում։ Չինաստանի հարավային նավահանգիստներից մեծ քանակությամբ վերամշակված կիտրոն է արտահանվում։*

*Չինական բժշկությունը լիմոնի այդ տեսակը օգտագործում է որպես ախորժակ գրգռելու և ուժերը վերականգնելու միջոց։*

*Չինացիները շատ բարձր են գնահատում մատնանման կիտրոնը նաև ուժեղ և հաճելի բուրավետության համար։*

*Առաջներում շատերը կարծում էին, թե այդ պտուղը երջանկություն է բերում այն տանը, որտեղ գտնվում է։ Դրա համար էլ մատնանման կիտրոնը հաճախ պատկերվել է տոնական բացիկների, պլակատների, փորագրությունների, ասեղնագործությունների վրա և այլն։*

*Հարավային չինացիները մատնանման կիտրոնը սպիտակեղենի հետ միասին դնում են սնդուկների և զգեստապահարանների մեջ։*

*Նման ձևով «անուշահոտությամբ օծված» զգեստը երկար ժամանակ արձակում է հաճելի բույր։ Երբեմն, նույն նպատակներով, նուրբ գործվածքեղենը լվանում են կիտրոնի հյութով։*

*Մատնանման կիտրոնի հայրենիքը հյուսիսային Հնդկաստանն է։ Ցիտրուսային այս հնագույն կուլտուրան մարդկանց հայտնի է եղել դեռ մեր թվարկությունից ավելի քան 4000 տարի առաջ։*

*Այժմ «Բուդդայի ձեռքը» մեծ քանակությամբ աճեցվում է Չինաստանի հարավային նահանգների ջրառատ վայրերում։ Չինացիները հպարտանում են այդ գեղեցիկ, մշտականաչ ծառով։*

# ՍԱՆԽԵՍՅԱՆ ԱՄԲԱՐՏԱԿԸ

Խունցզեխու լիճը, որ գտնվում է չինական երկու նահանգների՝ Անխոյի և Ցզյանսուի սահմանում, Խուայխե գետի ջրերի համար բնական ջրամբար է։

Մինչև վերջերս լճի ջրերը անձրևների ժամանակ դուրս էին գալիս ափերից և ողողում հսկայական տարածություններ՝ հյուսիսային Ցզյանսուի հարթավայրերում։ Ջորային ամիսներին՝ մայիսին և հունիսին լճի ջրերը անօգուտ կերպով հոսում էին Սանխես գետով դեպի Յանցզի։ Գյուղացիական դաշտերը, որոնք ընկած էին Խունցզեխուի մոտ. տուժում էին երաշտից. իսկ լճի հետ կապված Չինական Մեծ ջրանցքով նույնիսկ փոքրիկ նավերը չէին կարող անցնել։

1953 թվականի ամառը Խունցզեխու լճի վրա ավարտվեց Սանխեսյան ամբարտակի շինարարությունը։ Դա ամենամեծն էր հիդրոտեխնիկական կառուցվածքների մեջ, որոնք ստեղծվել են բուռն ու քմահաճ Խուայխե գետը սանձելու համար։

Այժմ ջուրը լճից հոսում է գլխավոր ոռոգիչ ջրանցքով, որը գցված է Գալյանցզյանից Ցզյանսյու նահանգի միջով դեպի Դեղին ծովը և Չինական Մեծ ջրանցքով։ Արդեն անցյալ տարվա ամառը գյուղացիների դաշտերը ջուր էին ստանում, իսկ Մեծ ջրանցքով նույնիսկ ամենաչորային ամիսներին առագաստավոր նավեր էին լողում։

Երբ Խուայխե գետի ջրերը լիովին կկարգավորվեն, Խունցզեխու գետի ջրերով ոռոգվող տարածությունը կմեծանա և կհասնի 25 միլիոն մուի (մուն 1/16 հեկտար է)։



# ԽՈՒԱՆԽԵԻ ԱԿՈՒՆՔՆԵՐԻ ՄՈՏ

*Մինչև վերջերս կարծում էինք, թե Խուանխե գետը սկիզբ է առնում Ցինխայ նահանգի Սինսուխայ լճից:*

*Սինսուխայը, ըստ էության, լիճ չէ, այլ ճահճացած մի վայր, որտեղ թափվում են բազմաթիվ գետակներ:*

*Չինական գիտնականների արշավախումբը հաստատեց, որ Խուանխեն սկիզբ է առնում ոչ թե Սինսուխայ լճից, այլ միայն հոսում է նրա վրայով: Հետազոտելով այդ ճահճացած վայրը, արշավախմբի մասնակիցները ծանծաղուտում հայտնաբերեցին գետի իսկական հունը և նրա երկայնքով ուղևորվեցին դեպի արևմուտք:*

*Երկու տեղական բնակիչների ուղեկցությամբ հետազոտողները հասան մինչև Խուանխե և Ցանցզի գետերի ջրբաժանը, որտեղ գետերի միջև ընկած տարածությունը 10 կիլոմետր է, իսկ հետո ուղևորվեցին դեպի հարավ-արևմուտք: Շուտով նրանք եղան Ցախելադախեցզեի շրջանում և հաստատեցին, որ տեղական լեռների արևելյան լանջերից հոսող բոլոր գետերը գնում են դեպի Ցուեգուցզոնլե բարձրավանդակը, որի վրա շատ լճեր կան: Այդ լճերից էլ սկիզբ է առնում Խուանխե գետը:*



Նկ. Ն. ԲՈԹԱՆՋՅԱՆԻ

1517 թվականի ամառային մի խաղաղ առավոտ պորտուգալական նավերը խարիսխ գցեցին Հարավային Չինաստանի ափերի մոտ:

Տեղացիները դիմավորեցին հյուրերին և նրանց հյուրասիրեցին մսով, ձկներով, բրնձից պատրաստած բլիթներով և անսովոր բաց-ոսկեգույն խմիչքով: Այդ խմիչքը թեյն էր, սովորական հոտավետ թեյը:

Չինացիները թեյին ծանոթ էին դեռևս 7-րդ դարից:

Ոսկեգույն խմիչքը դուր եկավ պորտուգալացիներին և հայրենիք վերադառնալիս, նրանք իրենց հետ վերցրին մի քանի պարկ թեյի չորացած տերև:

Այսպես կատարվեց թեյի առաջին ճանապարհորդությունը դեպի Եվրոպա: Տասնյակ տարիների ընթացքում թեյի գործածությունը տարածվեց արևելյան և արևմտյան կիսագնդերի բոլոր երկրներում:

Սովետական Միության տերիտորիայում թեյի առաջին թուփը տնկվել է Հայաստանում 1833 թվականին, իսկ յոթ տարի անց, թեյն արդեն մշակվում էր Սուխումի քաղաքի շրջակայքում:

Հետագայում ռուսական բանակի գնդապետ Ա. Ա. Սոլովցևը հիմնադրեց թեյի պլանտացիա Բաթումի քաղաքից ոչ այնքան հեռու Չակվիս-Ծղալի գետի հովտում:

Պլանտացիան գրավում էր ընդամենը մի քանի մետր տարածություն:

Տնկած բոլոր թփերը բերված էին Չինաստանից: 1894 թվականին այդ պլանտացիայում արդեն հաշվվում էր մոտ երեք հազար թուփ: Մի քիչ ավելի ուշ ռուս գիտնականներ Վ. Ա. Տիխոմիրովը և Ն. Ն. Կլինգենը ուղևորվեցին Ցեյլոն, Ճավա կղզիները, եղան Չինաստանում, Հնդկաստանում, Ճապոնիայում և իրենց հետ բերեցին նոր, բազմատեսակ թեյի սածիլներ:

Սակայն թեյի մշակությունը մեր երկրում լայն տարածում գտավ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո:

Թեյը օգտակար է մարդու օրգանիզմին և ունի բուժիչ հատկություն:



# ՉԻՆԱԿԱՆ ՇԱԽՄԱՏԸ

Շախմատը Չինաստանում ամենատարածված խաղերից մեկն է։

Պեկինում, հանգստի ժամին, ամեն տեղ կարելի է տեսնել շախմատ խաղացող մարդկանց՝ հին պալատների կարմիր պատերի ստվերում և նրանց սպիտակ մարմարե աստիճանների վրա, զբոսայգիների նստարաններին և նույնիսկ նավակներում։

Չինաստանում շախմատը շատ հնուց է հայտնի։ Նրա մասին առաջին հիշատակությունը, որ հանդիպում է հին ձեռագրերում, վերաբերվում է 8-րդ դարի վերջին։ Չինաստանում շախմատի հայտնվելը կապված է զանազան առասպելների հետ։

Առասպելներից մեկում պատմվում է, թե ինչպես Պանչիու նահանգի (այժմյան Խունան) մի գյուղացու այգում նարնջի ծառը, ի տարբերություն մյուս ծառերի, արտասովոր կերպով աճում է, մեծանում և հսկայական չափերի հասնում։ Երբ գյուղացին կտրում է այդ ծառը, նրա ներսում գըտնում է երկու ծերունու, որոնք տարված էին մի անհայտ խաղով։ Դա էլ հենց շախմատն էր։

Մեկ այլ առասպելում պատմվում է մի փայտահատի մասին, որն անտառում, սարի վրա տեսնում է երկու երիտասարդի՝ խոնարհված ինչ-որ տախտակի, որի վրա կլոր քարեր էին շարված։ Նա նստում և սկսում է դիտել խաղը և այնպես է տարվում, որ չի նկատում, թե ինչպես է անցնում ժամանակը։ Երբ փայտահատը վերադառնում է գյուղ, իմանում է, որ իր հեռանալու ժամանակվանից անցել են հարյուրավոր տարիներ...

Չինական շախմատը, սովորական շախմատի նման 32 ֆիգուր ունի, բայց դրանք արքայի, թագուհու, նավակի, ձիու, փղի, զինվորների ձևերով չեն պատրաստված, այլ պարզ, շաշկու քարերի նման են։ Միայն նրանցից ամեն մեկի վրա հիերոգլիֆներով մակագրություն է արված, որը նշանակում է նրա դերը խաղի մեջ։

Ի տարբերություն մեր շախմատի, չինականում չկա թագուհի, բայց նրանում մասնակցում են «գիտնականներ» և «թնդանոթ», որոնք չկան մեզանում։ Արքան կոչվում է «գեներալ», փիղը՝ «խորհրդական», նավակը՝ «կառք»։

Չինական շախմատում ֆիգուրները դասավորվում են ոչ թե քառակուսիների մեջ, այլ նրանց խաչաձևման կետերում։ Շախմատի տախտակը, որը ինչպես ամենուր, կազմված է 64 քառակուսուց, մեջտեղից բաժանված է «գետով»։

Զինվորները շարժվում են ուղիղ, կատարելով մեկական քայլ, բայց երբ կտրում-անցնում են «գետը», կարող են կատարել նաև կողմնային քայլեր, դարձյալ մեկական։

Գլխավոր հարձակվող ուժերը ձին, թնդանոթը և կառքն են։

Չնայած շախմատը Չինաստանում վաղուց հայտնի է և սիրելի, մինչև վերջերս երկրում շախմատային ակումբ կամ ընկերություն համարյա թե չկար։ Այժմ դրանց թիվը նկատելիորեն ավելանում է, կազմակերպվում են մրցումներ, որոնք հոծ հանդիսատես են հավաքում։





# Նրանք կատարեցին իրենց խոստումը

Սոցիալիզմի երիտասարդ կառուցողների ցուցահանդեսի տաղավարներից մեկում կա մի լուսանկար։ Այնտեղից նայում են երեք երեխա։ Լուսանկարի տակ գրված է «Ժժեն Ցզին-լյան—8 տարեկան, Ու Ջեն-չուն—7 տարեկան, Սյան Ցզին-լին—6 տարեկան»։

Ինչո՞ւ համար է այս լուսանկարը փակցված Պեկինի ցուցահանդեսում։

... Անցած տարի, ապրիլյան մի տաք օր այս երեք ընկերները սովորականի նման խաղում էին փողոցում։ Հանկարծ նրանք տեսան, որ ակումբի մոտ ժողովուրդ սկսեց հավաքվել։

— Գնանք տեսնենք՝ ինչո՞ւ են հավաքվում։ Երևի կինո կա,—առաջարկեց Ջեն-չունը և միասին թռչկոտելով վազեցին դեպի ակումբ։

Ցցվելով ամբոխի մեջ, նրանք իմացան, որ ոչ թե կինո է լինելու, այլ միտինգ։ Նրանք ուզում էին վերադառնալ, բայց մեկ էլ որոշեցին մնալ. հետաքրքիր է, ինչի՞ մասին պիտի խոսեն միտինգում։

Երբ մարդիկ սկսեցին ներս մտնել, իրենք էլ գնացին և սուսուփուս նստեցին մի անկյունում։

Սկզբում խոսում էին փորձնական հողամասերի մասին, բայց երեխաները ոչինչ չէին հասկանում։ Ամենափոքրիկը՝ Ցզին-լինը գլուխը հենեց Ջեն-չունի ուսին և սկսեց ննջել։ Բայց հանկարծ բոլորը ոտքի կանգնեցին և միաբերան խոստացան բարձր բերք աճեցնել։

Այդ պահը այնքան հանդիսավոր էր, որ Ջեն-չունը նույնիսկ չնկատեց, թե ինչպես ինքն էլ ոտքի կանգնեց և մեծերի հետ միասին բարձրաձայն խոստում տվեց։

Հետո բոլորի հետ նրանք էլ դուրս եկան ակումբից։

— Ջեն-չուն, իսկ դու ի՞նչ ես աճեցնելու,— հարցրեց Ցզին-լյանը, որը շեղաչ մի աղջիկ էր։

— Չգիտեմ,—շփոթվեց Ջեն-չունը։

— Ախր դու խոստացար բարձր բերք աճեցնել։

— Գիտե՞ս ինչ, ես էլ չիմացա, թե ինչպես կատարվեց դա։ Բոլորի հետ ես էլ ոտքի կանգնեցի ու խոստացա։ Բայց թե հիմա ինչ պիտի անեմ՝ չգիտեմ։

— Բայց եթե խոստացել ես, ուրեմն պիտի կատարես,—ասաց Ցզին-լյանը,—թե չէ՝ ի՞նչ է ստացվում։ Եթե խոստում տվող բոլոր մարդիկ հանկարծ չկատարեն իրենց խոստումը, ապա ո՞վ է բարձր բերք աճեցնելու։

— Ճիշտ է,—համաձայնեց Ջեն-չունը,—եթե դուք իմ ընկերներն եք, ուրեմն պետք է տվածս խոստումը կատարենք միասին։ Համաձա՞յն եք։

Ցզին-լյանը և Ցզին-լինը, իհարկե, համաձայնեցին. չէ՞ որ նրանք լավ ընկերներ էին։

—Բայց, ախր, ի՞նչ ենք աճեցնելու,—անհանգստանում էր Ցզին-լյանը։

— Եկեք բրինձ աճեցնենք։ Ամենից շատ բրինձն է պետք գալիս,—առաջարկեց Ջեն-չունը։

— Ճիշտ է,—վրա բերեց Ցզին-լյանը։—Ես մայրիկիս միշտ օգնել եմ և գիտեմ, թե ինչպես են բրինձ աճեցնում։

Հետևյալ առավոտյան նրանք ներկայացան գրասենյակ և խնդրեցին փորձնական հողամաս տալ իրենց։ Երեխաներին չմերժեցին և տվեցին կես հեկտար հողամաս։ Ճիշտ է, հողը իրենք չըվարեցին, բայց մնացած բոլոր աշխատանքները կատարեցին իրենց ձեռքերով։ Երբ մի բան անելուց հետո, այլևս չգիտեին ինչ անել, չէին հուսահատվում, գնում էին բրնձի դաշտերը և նայում մեծերին։

Երբեմն նրանք այնպես էին դժվարանում, որ ուզում էին հրաժարվել հողամասից։ Մոլախոտերն անընդհատ գլուխ էին բարձրացնում։ Երբ բրնձին ջուրը չէր բավականացնում, նրանք բերում էին փոքրիկ տաշտակներով։ Սա արդեն հեշտ չէր, որովհետև բրինձը շատ ջուր է պահանջում։

Եկավ բերքահավաքի ժամանակը։ Իսկական խնդություն էր։ Հարուստ բերք ստացվեց։ Իրենց փոքրիկ հողամասից նրանք հավաքեցին 745 կիլոգրամ բրինձ։

Բոլորը շնորհավորում էին փոքրիկներին։ Հետո պետությունը նրանց գնեցիկ հագուստ նվիրեց և հրավիրեց Սոցիալիզմի երիտասարդ կառուցողների ցուցահանդես։ Նրանք ճանապարհ ընկան, բայց չհասան Պեկին։ Իրենց տներից մի քիչ հեռանալուց հետո, շատ կարոտեցին մայրիկներին, տխրեցին և խնդրեցին տուն վերադառնալ։

Բայց ոչ ոք նրանց վրա չծիծաղեց, որովհետև նրանք փոքր երեխաներ են, թեև հերոսական գործ են կատարել։

Ահա թե ինչու ցուցահանդեսում կախված է նրանց լուսանկարը։

Եվ յուրաքանչյուր մարդ, ով եղել է այդ ցուցահանդեսում, խորին հարգանքով է լցվում Խուբեյ գավառի այդ երեք երեխաների նկատմամբ, որոնք իրենց պստիկ տեղով կատարեցին տված խոստումը։



## ՉԻՆԱԿԱՆ ԱՌԱԾՆԵՐ

*Ուտելուց հետո լավ է զբոսնել,*
*Քան թե գրպանում դեղատուն պահել։*

* * *

*Ինչքան շատ կարդաս ու շատ սովորես,*
*Այնքան կիմանաս, որ քիչ բան գիտես։*

* * *

*Թե մարդիկ հաշտ ու համերաշխ լինեն,*
*Հասարակ կավն էլ ոսկի կդարձնեն։*

* * *

*Իմաստունը խրատում է, համոզում,*
*Իսկ անգետը բռունցքներով է խոսում։*

# ԵՐԿՆՔԻ ՏԱՃԱՐԸ

Պեկինում պահպանվել է չինական ամենահին տաճարներից մեկը՝ Երկնքի տաճարը։ Տաճարի ճարտարապետությունը բավական անսովոր է, որպես տանիք նրա համար ծառայում է բաց երկինքը։

Տաճարի ներսի սալահատակված հարթակի կենտրոնում կա մի քարե սկավառակ։ Երբ մարդ բարձրանում է նրա վրա և սկսում է խոսել, ձայնը ուժեղանում և հնչում է սովորականից մի քանի անգամ ավելի բարձր։

Սակայն զարմանալին միայն դա չէ։ Փորձեցեք կանգնել քարե հարթակի առաջին սալի վրա և ձայն արձակել։ Արձագանքը կլսվի միայն մեկ անգամ։ Անցեք երկրորդ սալին և նորից կանչեք, արձագանքը կլսվի երկու անգամ։ Երրորդ սալի վրա այն կլսվի երեք անգամ։ Բայց դրանով ևս հրաշքները չեն վերջանում։ Տաճարի հարթակը պատած է բարձր պարսպով, որը սկըսած մուտքից՝ սահմանազատվում է քարե փոքրիկ արգելակներով։ Միմյանցից հարյուրավոր քայլ հեռու կանգնած մարդիկ կարող են իրար հետ խոսել մինչև անգամ շշնջալով։ Ժամանակակից ինժեներները չեն կարողանում այնպես պլանավորել հանդիսասրահը, որպեսզի այն ունենա նույնպիսի ակուստիկական հատկություններ, ինչպես Պեկինի Երկնքի տաճարը։ Մինչև անգամ լավագույն ինժեներներին միշտ չէ, որ հաջողվում է հասնել այն բանին որպեսզի բեմում շշնջալը պարզ լսելի դառնա վերջին շարքերում։ Եվ Պեկինի տաճարի քարերը համառորեն պահում են իրենց շինարարների գաղտնիքը։





## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*

*Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ*



| | | | | | |
|---|---|---|---|---|---|
| 1 | | ○ | ○ | | |
| 2 | ○ | | 3 | | |
| | 4 ○ | ○ | | | |
| 5 | | | 6 ○ | ○ | ○ |
| | 7 | | 8 | | |
| | | 9 ○ | | | |
| ○ | 10 | ○ | | 11 | |
| ○ | | ○ | | | 12 |
| | | 13 ○ | ○ | ○ | |
| 14 | | | 15 | | ○ |
| ○ | ○ | | | 16 | |
| 17 | | | 18 ○ | ○ | |

### ՉԱՅՆՎՈՐԴ-ԱՌԱԾ

*1. Շիրվանզադեի վիպակներից, 2. հերոս՝ Միրաքյանի «Հալվարի որսը» պոեմից, 3. Թումանյանի պատմվածքներից, 4. մերձարևադարձային կենդանի, 6. ՍՍՌՄ շախմատի գրոսմայստեր, 7. ընտանի թռչուն, 8. Թումանյանի լավագույն պատմվածքը, 9. բեղ բառի հոմանիշը, 10. երկանիշ թիվ, 11. «Ո՞վ է Ռուսիայում լավ ապրում» պոեմի հեղինակը, 12. բառի մաս, 13. տեխնիկական կուլտուրա, 14. վառելանյութ, 15. քաղաք Ազովի ծովափին, 16. հոսող ջուր, 17. միրգ, 19. բուսական յուղ։*

*Չայնվորդը ճիշտ լուծելուց հետո՝ շրջագծված վանդակներում դուք կկարդաք չինական ժողովրդական առած։*

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ


Խմբագիր՝ Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝** ԱՍԱՏՐՅԱՆ Օ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ., (գեղարվեստական խմբագիր). ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐՍԶՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., (պատասխանատու քարտուղար). ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԱՖՅԱՆ Պ., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41

*Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—11—83, 2—59—06։*

*ՎՖ 06782. Պատվեր 1037։ Տպաքանակ 62001 Տպագրական 4,5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 31/VIII 1959 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91։*

Գինը 2 ռ.

## ՎԻԿՏՈՐԻՆԱ

1. Ե՞րբ է ստեղծվել Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան։

2. Ո՞ր թվականին է կնքվել սովետա-չինական պայմանագիրը բարեկամության և փոխօգնության մասին։

3. Չինական ո՞ր քաղաքները մեկ միլիոնից ավելի բնակչություն ունեն։

4. Ո՞ր մեծ գետի երկայնքով է անցնում Չինաստանի և Սովետական Միության սահմանագիծը։

5. Ինչպե՞ս են կոչվում Չինաստանին պատկանող այն երկու մեծ կղզիները, որոնք գտնվում են Հարավ-Չինական ծովում։

6. Ի՞նչ է Յանցզի գետի վրա կառուցված առաջին կամուրջի անունը։

7. Ինչպե՞ս է կոչվում Պեկինի գլխավոր հրապարակը։

8. Որո՞նք են այն չորս չարիքները, որոնց դեմ պայքարում են չին երեխաները։

## Պատասխանում ենք

«ՊԻՈՆԵՐ» № 9

### ԿՐՈՍՎՈՐԴ ԵՐԵՔ ՏԱՌՈՎ

Ուղղահայաց— 1. Միզ, 2. թուզ, 3. միս, 4. գոլ, 5. ջահ, 6. նավ. 8. արջ, 10. ուպ, 12. Աիմ. 14. Ուֆա, 16. Արա, 17. Վան, 18. Անի, 20. Նևա, 21. ինն, 22. ձուկ, 23. բոկ, 24. մատ, 25. բալ, 26. Դոն:

Հորիզոնական— 2. Թոմ, 4. գաջ, 7. գազ. 9. սոլ. 11. հավ, 13. ջուր, 15. ժամ, 17. վազ. 19 թան, 21. ինձ, 23. թիմ, 15. բադ. 27. Կուկ. 28. Տալ:

### ՄՏԱԾԻՐ՝ ՀԵՏՈ ԱՍԱ

1. Երկու մատից էլ հավասար երկարություն ունեն:

2. Ֆիզիկայի օրենքի համաձայն՝ գնդիկը և գլանը գլորվելու պատճառով կորցնում են իրենց անկման էներգիայի 30%-ը, իսկ խորանարդը՝ 100%-ով օգտագործում է իր էներգիան և այդ պատճառով առաջինն է հասնում հատակին: Վերջում հասնում է գլանը:

### ՌԵԲՈՒՍ

Գայդար, «Չուկն ու Գեկը»

### ԿԱՐԴԱՑԱԾ ԳՐՔԵՐԻՑ

1. Քեռի Ստյոպա, 2. Վաչագան, 3. Գիքորը, 4. [illegible] Անգեղ, 5. Քաջ Նազար, 6. Շվեյկ, 7. Վանկա:

2 ռ.




Ցնծություն է մեր հոգում,
Երջանկություն թևավոր.
Տուն ու մառան է մտնում
Առատությունը այսօր...